# ՉԵՄՊԻՈՆԸ

Շ. ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. Գր. ԱՂԱՍՅԱՆԻ

Տաս րոպե կար մինչև դասերի սկսվելը։ Վեցերորդ «ա» դասարանից Էդիկը, Աշոտը, Լևիկը դպրոցի մի անկյունում մի տախտակի կտոր էին դրել ու ձնագնդով նշան էին բռնում։

Մեկ էլ Հովիկը, որ այդ օրվա հերթապահն էր, վազելով դեպի տղաները, դեռ հեռվից բղավեց.

— Տղանե՛ր, մի եկեք դասարան ու տեսեք, թե ով է եկել...

Ու նորից շուռ եկավ վազեց դեպի դասարան, իսկ տղաները մի րոպե մտածելուց հետո, հետևեցին նրան։

Դասարանում, ամենավերջին ազատ նստարանին մի անծանոթ տղա էր նստած։ Դա մի այնքան բարձրահասակ ու հաղթանդամ տղա էր, որ այդպես նստած Հովիկի հասակին էր երևում։ Պետք է ասել, որ Հովիկը վեցերորդ «ա»-ում ամենացածրահասակ ու նիհար տղան էր և հիմա նորեկի դիմաց կանգնած, բերանը բաց, հիացմունքով նրան էր նայում։

Երբ տղաները լցվեցին դասարան, նրանց հետևեցին նաև աղջիկները։ Հովիկը մոռանալով, որ ինքը հերթապահ է և պարտավոր է մինչև զանգը ոչ ոքի դասարան չթողնել, հանդիսավորությամբ սկսեց բացատրել.

— Անունը Սիրակ է, նոր է Բաքվից եկել, բոլորին կարող է հաղթել և չեմպիոն է։

— Չեմպիո՞ն, — միաժամանակ հարցրին տղաներից մի քանիսը։

Սիրակը խեթ-խեթ նայեց Հովիկի կողմը և լուռ գլխով արեց։

— Դու էդ ի՞նչ գծով ես չեմպիոն, — հարցրեց Էդիկը։ Նորեկի գալն ամենից առաջ նրան էր անհանգստացնում, որովհետև մինչև այդ նա էր դասարանի ամենաբարձրահասակ, ամենաուժեղ տղան և, ինչպես պարզ երևում էր Սիրակի արտաքինից, նրա հեղինակությունը լրջորեն վտանգված էր։

— Բոլոր գծերով, —բացատրեց Հովիկը, —նա ինքը ինձ պատմեց։

— Էս նոր տղան պարծենկոտ է, —ասաց Սոնիկը։

Աղջիկներն էլ էին հետաքրքրվել նորեկ տղայով և մոտեցել նրան էին նայում։

Լենան ասաց.

— Սովորելո՞ւմն էլ է չեմպիոն եղել։

Բոլորը ծիծաղեցին, բայց Էդիկը, որ միշտ լուրջ էր մնում, հարցրեց.

— Իսկ դահուկներո՞վ։

Սիրակը, ըստ երևույթին, ամեն ինչ պատմել էր Հովիկին, որովհետև հիմա նա լուռ էր մնում, և նրա փոխարեն բոլոր հարցերին պատասխանում էր Հովիկը։

— Նա դահուկներ էլ լավ է քշում, միայն թե դահուկների գծով իրենց մոտ մրցում չի եղել, — բացատրեց Հովիկը։

Ժամանակն աննկատելի անցավ, զանգը տվին, դասը սկսվեց, ամեն մարդ իր տեղը նստեց։

Նորեկն, իրոք որ, մի քանի օրվա մեջ, իր ուժով ու ճարպկությամբ աչքի ընկավ։ Բոլորից արագ էր վազում, բոլորից հեռու էր թռչում, ո՛չ ոք նրա չափ ծանրություն չէր բարձրացնում։

— Լսիր, Չեմպիոն, — մի անգամ նրան ասաց Էդիկը, — վաղվանից մենք պետք է դահուկներ քշել սովորենք, դու էլ կգա՞ս։

— Մենք նոր պիտի սովորենք, — մեջ ընկավ Հովիկը, — իսկ նա արդեն գիտե, նա ի՞նչ պիտի սովորի մեզ հետ։

— Հա, ես ի՞նչ պիտի սովորեմ ձեզ հետ, —իսկույն համաձայնվեց Սիրակը, — դե ես գիտեմ, երբ որ կսկսեք կարգին քշել, էն ժամանակ ես էլ...

Վեցերորդ դասարանի տղաների ու աղջիկների մեծ մասը գրվեց՝ դահուկային խմբում պարապելու համար։

— Էսօր պարապմունք ունենք, — ասում էին տղաները։

Սիրակը նրանց վրա ծիծաղում էր։



— Հի՛, հի՛, պարապմո՜ւնք։ Դպրոցի բակում ի՞նչ դահուկ քշել... Ա՛յ, երբ քաղաքից դուրս կգնանք, ես էլ կգամ, կտեսնենք, թե...

Միրակն իրեն այնպես հպարտ էր պահում և այնքա՜ն սիրում էր իր ուժը ցույց տալ։ Մեկ էլ տեսար, կբռներ տղաներից մեկին, թե՝

— Կարո՞ղ ես բռունցքս բանալ։

Պետք է ասել, որ այդպիսի փորձերի ամենից հաճախ Հովիկն էր ենթարկվում։ Դասամիջոցներին հաճախ կարելի էր տեսնել, թե ինչպես Հովիկը քրտնամխած, տնքտնքալով աշխատում է Միրակի սեղմած բռունցքը բանալ, կամ նրա ծալած արմունկը ձգել-բաց անել։

Հովիկը ամբողջ օրը պտտվում էր Միրակի շուրջը, ոչ մի քայլ ետ չէր մնում նրանից։

Մեկ-մեկ էլ մի հարմար տեղ նստում էին իրար կողքի ու Միրակը պատմում էր.

— Մի անգամ ես նռնակը էնպես շպրտեցի, որ դպրոցի բակից դուրս ընկավ, գնաց մայթին հասավ ու լուսամուտին դիպավ։

— Հետո՞...

— Հետո՞. լուսամուտի ապակին կոտրվեց,— անտարբեր պատասխանում էր Միրակը։





Բա քեզ բան չասացի՞ն։

— Ի՞նչ։ Ի՞նչ պիտի ասեին, ես ինչ մեղավոր էի,— արհամարհանքով պատասխանեց Սիրակը։

Իսկ հետո Հովիկը, չափազանցրած՝ այդ բոլորը պատմում էր մյուսներին։ Միայն Էդիկն էր, որ չէր ուզում այդքան ճշտությամբ հավատալ։

— Փչում է, գլուխն է գովում,— ասում էր նա։

Եվ ահա մի շաբաթ օր որոշվեց, հաջորդ առավոտյան գնալ քաղաքից դուրս և մոտակա բլրակի վրա դահուկ քշել։ Երեխաները այդ օրը տուն գնացին՝ մի-մի զույգ դահուկ հետները առած։ Կիրակի առավոտյան նրանք պետք է հանդիպեին նախօրոք պայմանավորված վայրում։ Մի զույգ դահուկ էլ Սիրակին տվին։

Հիանալի առավոտ էր։ Գիշերը առատ ձյուն էր եկել, իսկ հիմա չնայած սառնամանիք էր, պարզկա երկնքում շողում էր արևը։ Օդի մեջ սառցի համարյա անտեսանելի բյուրեղիկներ էին լողում, որոնք հաճելի սարսուռ պատճառելով ծակծկում էին մարդու դեմքը։

Վեցերորդ «ա» դասարանի տղաներն ու աղջիկները քառորդ ժամից ավելի էր, ինչ պայմանավորված վայրում հավաքված, անհամբերությամբ սպասում էին երկու հոգու, որոնք անպայման խոստացել էին գալ, բայց չգիտես ինչու, ուշանում էին։ Դրանք Հովիկն ու Սիրակն էին։

Առաջինը աղջիկները սկսեցին տրտնջալ։

— Ի՞նչ է, քսան հոգով կանգնենք, երկու հոգո՞ւ սպասենք,— սրտնեղեց Քնարիկը։

— Ես արդեն անշարժ մնալուց սառեցի,— ասաց Լենան։

— Սառեցիր, տեղումդ վեր-վեր թռիր,— փորձեց նրան սաստել Էդիկը, բայց ջոկատավար Հրանտը, որ խմբի ղեկավարն էր, ասաց.

— Քնարիկը իրավունք ունի։ Ուշացել են՝ թող տուժեն։ Համ էլ քիչ հետո արևը կսկսի ձյունը հալեցնել...

Ու խումբը ճամփա ընկավ։

Տեղ հասան թե չէ, շուտով բոլորովին մոռացան բացակայողներին։ Բարձրանում էին բլրակի վրա, այնտեղից դահուկներով սլանում ցած, այնքան լավ էր, հաճելի և ուրախ...

Նույնիսկ Լենան, որ ամենքից ավելի մրսկան էր, շոգել ու քրտնել էր և հիմա ամեն վայրկյան ասում էր, թե փոշմանել է, որ այդքան տաք է հագնվել։

Մեկ էլ հանկարծ Լևիկը բղավեց.

— Հովիկն ու Սիրա՜կը...

Բոլորը նայեցին նրա ցույց տված ուղղությամբ և տեսան, որ իրոք, բլրակի գագաթից քիչ այն կողմ, ձյան վրա նստած, Հովիկն ու Սիրակը դահուկներն են ոտքներին ամրացնում։

Ընկերներն ամեն կողմից հանդիմանություններ տեղալով սլացան դեպի ուշացածները։ Սիրակի դեմքը մռայլ էր, տխուր։

Թե ինչու ուշացան, այդ հարցին նա ոչինչ չպատասխանեց։ Միայն Հովիկը ասաց.

— Մենք միասին պիտի գայինք, Սիրակենց ժամացույցը ետ էր։

Հիմա արդեն ամենքն անհամբերությամբ սպասում էին, որ տեսնեն, թե Սիրակն ինչպես է դահուկներ քշում։ Եվ այդ ժամանակ տեղի ունեցավ այն հրաշքը, որի մասին երկար ժամանակ խոսում էին վեցերորդ «ա» դասարանում։ Հովիկն ու Սիրակը իրար կողքի կանգնեցին բլրակի գագաթին, ձողափայտերը շարժեցին ու... էլ ոչ ոք չկարողացավ որևէ բան նշմարել, որովհետև ձյան փոշու մի այնպիսի ամպ բարձրացավ, որ մի պահ ամենքին թվաց, թե նույնիսկ արևը խավարեց։

Երբ ամպը նստեց, և ամեն ինչ պարզվեց, երևաց հետևյալը.

Բլրակից ներքև, դեպի հեռուն ձգվում էր արևի տակ շողշողացող դահուկներով փայլեցրած ուղին, որի ծայրին երևում էր միայն Հովիկը, իսկ Սիրակը չկար։ Մի՞թե հրաշք չէր այդ. մի ակնթարթում ո՞ւր կարող էր հասած լինել Սիրակը, որ բոլորովին չէր երևում։

— Ռեակտի՞վ է, ինչ է...— ասաց Էդիկը և ամենքը ծիծաղելով սլացան անհայտացած ընկերոջ ետևից։

Հավաքարվեցին Հովիկին։ Նա կանգնած, շփոթված շուրջն էր նայում։

— Բա Սիրակը ո՞ւր է,— հարցրին։

— Չգիտեմ,— թոթովեց Հովիկը։



— Չլինի՞, թե երկինք թռավ,— կատակեց Քնարիկը։

Իսկ ջոկատավար Հրանտը Հովիկին հարցրեց.

— Նա դահուկ քշել գիտե՞ր...

— Գիտի... — նորից թոթովեց Հովիկը։

— Ընկերնե՛ր, ճանապարհի երկու կողմով գնանք ու Սիրակին փնտրենք,— կարգադրեց Հրանտը։

Ամենքը շտապ շարժվեցին տեղներից։ Քիչ հետո լսվեց Հովիկի ձայնը.

Ես Սիրակին գտա...

Ճամփից դուրս շեղվող մի թեք արահետով, որը դեպի փոքրիկ ձորակն էր տանում, բոլորը հետևեցին Հովիկին և քիչ հետո ձորակի հատակում նկատեցին հասակով մեկ տարածված Սիրակին, որը պառկել էր՝ երկու ձեռքով ամուր բռնած մի ոտքը։

— Ոտքը հո չի՞ կոտրվել,— անհանգստացավ Հրանտը։

Մոտեցան՝ անհանգստացած, վախեցած։

— Բան չի եղել, միայն թե սառել է,— բացատրեց Սիրակը, որի աչքերից արցունքներ էին գլորվել։

Եվ իրոք նա ամբողջովին սառել էր. նրա դահուկներից մեկը՝ կոշիկի և գուլպայի հետ միասին անհայտացել էր, ձյունը լցվել էր շորերից ներս, շատ խղճալի տեսք ուներ «Չեմպիոնը»...

— Բա ինչո՞ւ չէիր ասում, որ դահուկ քշել չգիտես,— հարցրեց Հրանտը։

Բա որ ես ասում էի՝ փչան է, գլուխն է գովում... — ավելացրեց Էդիկը։

Սիրակը լուռ էր մնում, բայց էլ չհամբերեց, մեկ էլ լացակումած նա դարձավ Հովիկին.

Բա էն առաջին օրը ես քեզ բան ասե՞լ էի, որ դու բոլորին ասացիր, թե դահուկ քշել գիտեմ, բայց մրցման չեմ մասնակցել...

Ինչքան էլ որ կարեկցում էին իրենց ընկերոջը, բոլորն էլ ակամայից ծիծաղեցին, նայելով Հովիկին, որը կանգնել էր շփոթված, կարմրած, գլուխը կախ. պարզ երևում էր, որ նա ինքն իրեն շատ մեղավոր է ճանաչում։

Չարժե պատմել, թե ինչքան ման եկան ու փնտրեցին, մինչև որ գտան Սիրակի կոշիկի ու գուլպայի հետ միասին անհետացած դահուկը, ինչքան չարչարվեցին, մինչև մաքրեցին նրա շորերը ձյունից։ Սիրակը կոշիկները հագավ, վեր կացավ թե չէ, Հրանտը նրան կարգադրեց.

— Տեղում վազքով, մա՛րշ...

Դա շատ անհրաժեշտ էր, որովհետև խեղճ տղան բոլորովին սառել էր...

* * *

Իսկ ամենից տարօրինակն այն էր, որ այդ դեպքից հետո Սիրակն ու Հովիկն ավելի մտերմացան։

Նրանք շարունակ իրար հետ էին լինում, Դասերից հետո էլ միասին էին անցկացնում իրենց ազատ ժամանակը։

Հաջորդ կիրակի օրը նորից պետք է գնային բլրակի վրա՝ դահուկ քշելու։ Հովիկը խնդրեց իրեն ու Սիրակին թույլ տալ առանձին գնալու։ Հրանտը թույլ տվեց։

Երեխաների բախտը բերել էր։ Այդ կիրակի նույնպես լավ եղանակ էր։ Նրանք բարձր տրամադրությամբ դեպի բլրակն էին գնում, շարունակ ծիծաղելով, որովհետև ամբողջ ճանապարհին հիշում էին անցած կիրակի պատահած հրաշքը։

Բայց բլրակից դեռ բավական հեռու էին, երբ բոլորը միասին մի այնպիսի բան տեսան, որ զարմացած արագացրին իրենց քայլերը։ Հովիկն ու Սիրակն արդեն այնտեղ էին։ Տղաները տեսան, թե ինչպես նրանք իրար հետ, իրար կողք-կողքի դահուկ են քշում։ Լսվում էր Հովիկի ձայնը։

— Մեջքդ մի քիչ կռացրու, ոտքերդ մի՛ կպցրու իրար, ոտքերդ ուղիղ պահիր։

Հետո տեսան, թե ինչպես Հովիկը բարկացած ձողափայտով հրեց Սիրակի մեջքից։

Ո՞ւմ եմ ասում՝ մեջքդ առա՛ջ թեքի...



Սամվելը մռայլվեց. «Հեռախոս ունենային էլ մի բան չէ, սովորել են, հենց որ մի բան լինում է, իսկույն զանգահարում են...» Ապա մի պահ մռայլվելուց հետո դեմքը պայծառացավ. «Իսկ եթե հայրիկիս քարտուղարուհուն ասեմ, որ այսուհետև, երբ դպրոցից զանգահարեն, ասի՝ նա այստեղ չի՞», և գլուխ արած մարդու նման խորը շունչ քաշեց։ «Այսօր ինձ պատմության ուսուցիչը դաս կհարցնի, իսկ ես դասս չգիտեմ... Թող զանգահարի, կպատասխանեն՝ «այստեղ չի...»։

— Մայրիկ, այս ինչպե՞ս ես կապել ժապավենս,— հայելու մոտից լացակումած մորը մոտեցավ Լալիկը։

— Արի, արի մոտս՝ նորից կապեմ։

Մայրիկը քանդեց Լալիկի ժապավենը։

— Վա՜յ, վա՜յ, մազերս, ցավացրիր։

— Լա՛վ, լա՛վ, կամաց կկապեմ, այ, այսպես ես ուզում չէ՞,— լայն ժապավենը մազերի ծայրին ամրացնելով, ասաց մայրիկը։

Լալիկը նորից մոտեցավ հայելուն, լաց լինելով նա պոկեց ժապավենը և շպրտեց հատակին։

— Էս ի՞նչ ձևի ես կապել։

Մայրիկը կռացավ, վերցրեց ժապավենն ու մոտեցավ աղջկան։

— Արի, արի, տեսնեմ ինչ ձևի ես ուզում։

— Չեմ ուզում ծայրը կախվի, ուզում եմ Թիթեռնիկի նման լինի։

Մայրիկը գրկեց Լալիկին, համբուրեց, հանգստացրեց ու նորից կապեց ժապավենը։

Լալիկն իջավ մոր գրկից, նայեց հայելուն, ինքնագոհ ժպտաց ու մոտենալով սեղանի վրա դրված պայուսակին, հանեց հայոց լեզվի դասագիրքը։

— Մայրիկ ջան, բռնիր, մի անգամ էլ դասս անգիր ասեմ։

Լալիկը գիրքը տվեց մայրիկին ու սկսեց.

ԴՊՐՈՑԻ ՃԱՄՓԱՆ

Ձմեռվա բուքին
Սառնամանիքին,
Դպրոցի ճամփան
Դժվար է, երկար
Շատերի համար։

— Ապրես, աղջիկ ջան, այսօր էլ «5» կստանաս։— Գովեց մայրն ու գիրքը տվեց աղջկան։

Լալիկը գրքերը դրեց պայուսակի մեջ ու մոտեցավ պատուհանին։

— Վա՜յ, մայրիկ ջան, ինչքան ձյուն է եկել, օյ, օյ, օյ, դեռ հիմա էլ գալիս է, իսկ Գևորգը դեռ չի եկել, ո՞նց պիտի գնանք դպրոց։

— Ճիշտ է ասում Լալիկը,— բացագանչեց Սամվելը,— եթե մեքենան չգա, դպրոց չենք գնա։

Սամվելը ուրախացած նայեց ժամացույցին, մնում էր 10 րոպե։ «Երանի թե այսօր էլ չգա, կազատվենք դասից...»։



— Երեխաներ, եկեք մի-մի բաժակ թեյ խմեք,— խոհանոցից լսվեց մոր ձայնը։

— Չե՛նք ուզում, չե՛նք ուզում,— մորն ընդառաջ վազեց Սամվելը,— փող տուր մեզ, փող։

Մայրը բաց արեց պայուսակը։

— Վայ, Սամվել ջան, մանր էլ չկա։

— Դե ոչինչ, մայրիկ, դու ինձ տասնհինգ ռուբլի էիր խոստացել, մի հինգ-վեց ռուբլի էլ նախաճաշի համար պիտի տաս, մնում է մի քանի ռուբլի, էն էլ հենց...

— Սամվել ջան, վերցրու, ես փողի մասին չեմ մտածում, ինչքան ուզում ես վերցրու, միայն աշխատիր երկուսներդ վերացնել, գիտես, այնպես եմ ամաչում քո ուսուցիչներից...

— Դե լա՛վ, լա՛վ,— փողը մոր ձեռքից խլելով ասաց Սամվելը,— մի սկսիր նորից։ Այդպես ես անում, որ մարդ ուշանում է դասից։ Տեսնում ես, մի քանի րոպե է մնացել, իսկ մեքենան չկա. այն օրն էլ մեքենայի պատճառով ուշացանք դասից։

— Տո՛ւ-տո՛ւ-տո՛ւ,— բակից լսվեց մեքենայի ձայնը։

«Զէ, այսօր չհաջողվեց դասից ազատվել,— պատուհանից դուրս նայելով մտածեց Սամվելը,— Գևորգը եկավ»։

Նրանք հագան տաք մուշտակները և դուրս եկան։

— Ինչո՞ւ ես ուշանում,— հարցրեց Սամվելը մեքենավարին։

Գևորգը կարծես չլսեց նրան։

— Ինչո՞ւ ես այդքան հեռու կանգնեցրել մեքենան,— այս անգամ արդեն գոռաց Սամվելը։

— Մի քիչ կամաց, դպրոցական ես և մեծերի հետ խոսել չգիտես,— հանգիստ պատասխանեց Գևորգը։— Ճանապարհ բաց արեք, մյուս անգամ մեքենան կբերեմ ներս, մահճակալիդ մոտ...

Թափվում էին ձյան փափուկ փաթիլները։ Դեպի դպրոց ձգվող լայն ճանապարհը լիքն էր դասի շտապող երեխաների խմբերով։

— Տու-տու-տու,— մեքենան ճանապարհ բաց անելով սլանում էր առաջ։

— Այնպես եմ սիրում ձմռան այս օրերը,— ասաց աղջիկներից մեկը, ձեռքով բռնելով թափվող փաթիլները։

Սամվելը բացեց մեքենայի աջ կողմի ապակին ու թեք կիտով չափ դուրս հանեց։

Ուրախ աղմուկով ու զրուցելով անցնում էին վեցերորդ դասարանցիները՝ Սեդրակը, Վաչիկը, Սեդան, Կարենը, Խորենը։ Երբ մեքենան հասավ նրանց, տղաներից մեկն ասաց.

— Սամվել, թեերդ ներս քաշիր, կմրսես հանկարծ...

Մեքենան արագ սլացավ առաջ։ Բայց երեխաների ծիծաղն ու քրքիջը դեռ հասնում էր Սամվելի ականջին, ու նա՝ գլուխը կախ, մեքենայի մեջ կուչ եկած, ապակիների արանքից դիտում էր ընկերներին, իսկ Լալիկը մտքում կրկնում էր դասը.

Իսկ ով սեր ունի
Մեզ պես ուսումի,
Դպրոցի ճամփան
Միշտ կարճ է, սիրուն,
Ձմեռ թե գարուն։

Մեքենան կանգ առավ դպրոցի մուտքի մոտ։ Հենց որ Սամվելը մեքենայից դուրս եկավ, միանգամից մի քանի ձնագնդիկներ թռան օդի մեջ ու կպան նրան...

Գևորգը ժպտաց, շուռ տվեց մեքենան ու աչքը չկտրելով երեխաներից հեռացավ։

Սամվելն իրեն գցեց բակ, ուր նրա ետևից ուրախ քրքիջ բարձրացավ։ Նա ազատ շունչ քաշեց. «Սպասեցեք, ես ձեզ ցույց կտամ»,— ատամները հավեհագ ավելի բարձրանալով մտածում էր նա։

* * *

Վերջացել էին առաջին հերթի դասերը, աշակերտները խմբերով դուրս էին գալիս ու ցրվում։ Միայն դպրոցի բակի պարսպի տակ մնացել էին կանգնած երկու աշակերտ։ Սամվելը մուշտակի օձիքով ծածկում էր գլուխն ու ասում.

— Մի քիչ էլ սպասենք, հիմա կգա։

Իսկ փոքրիկ Լալիկը լաց էր լինում.

— Չեմ ուզում սպասել, ոտքերս մրսում են, գնանք, տեսնում ես, բոլորը գնում են։

Բոլորը գնում են, դու էլ գնա,— վիզը երկարացնելով պատասխանում էր եղբայրը,— բոլորը մեքենա չունեն,— հպարտությամբ ձայնը բարձրացնելով շարունակեց Սամվելն ու նայեց շուրջը։ Բայց Գևորգը չէր երևում։

«Ով գիտե՝ մեքենան առել ուր է կորել,— մտածում էր Սամվելը։— Ախ, հայրիկն ինչո՞ւ դրան աշխատանքից չի հեռացնում, շատ մեծամիտ է...»։

Վաղուց սկսվել էին երկրորդ հերթի դասերը։ Փողոցը եռում էր, գնում էին, գալիս բազմաթիվ մեքենաներ, իսկ Գևորգը չէր երևում...

— Գնանք,— համբերությունից դուրս էր գալիս Լալիկը։

Եկեք, հանկարծ լսվեց Գևորգի բամբ ձայնը։

Երեխաները չնկատեցին, թե նա որտեղից հանկարծ հայտնվեց իրենց մոտ։

Լալիկն իսկույն վազեց ու մտավ մեքենայի մեջ, իսկ Սամվելը ծանր քայլերով մոտեցավ. նրա գեր մարմինը օրորվում էր հոգնածությունից։

Հաջորդ օրը մեծ դժվարությամբ Սամվելն ու Լալիկը ոտքով դպրոց գնացին։ Մայրիկն ասում էր, որ մեքենան փչացել է, Սամվելը չէր հավատում։ «Բո-

ընտանին նոր «Զիմ» էր, ինչո՞ւ պիտի փչանար,— մտածում էր նա։ — Եթե մի բան էլ պատահած լինեի. Գեորգը իսկույն կարգի կբերեր... Հայրիկն էլ այնպես տխուր էր...»։

Այդ օրը դասերից հետո, փողոցի անկյունում, դպրոցի պարսպի տակ մնացել էին կանգնած Սամվելն ու Լալիկը։ Իսկ մեքենան չկար, չկար ու չկար...

Նրանք երկար սպասեցին։ Վերջապես մեքենան հայտնվեց, բայց այս անգամ չմոտեցավ երեխաներին, այլ կանգնեց փողոցի մեջտեղում։ Սամվելը պատրաստվեց հարձակվել շոֆերի վրա, թափել զայրույթը, բայց Գեորգը գլուխը դուրս հանելով կաբինից, ասաց.

— Մի՛ սպասեք, հայրիկն արգելել է ձեզ մեքենայով տուն տանել, քայլեցեք ոտքով, և գուցե այդ ձեր բախտից է, եթե ոչ, Սամվելն արդեն այնպես է ճարպակալել, որ մսագունդ է դարձել, իսկ դա վատ է առողջության համար. դե, մա՛րշ. քայլեցեք ոտքով...

Մեքենան արագ սլացավ առաջ։

Սամվելն ու Լալիկը տխուր նայեցին իրար։ Ի՞նչ պիտի անեին հիմա, ու կարծես գլխի ընկնելով, որ ոտքեր ունեն, սկսեցին քայլել դեպի տուն։



# ՀՆՁՎՈՐՆԵՐԸ

(ժողովրդական)

Հեր ու տղա գնում են իրենց արտը հնձելու։ Մինչև տեղ են հասնում, արևը մի մարդաբոյ բարձրացած է լինում։ Տղան ասում է.

— Ապի, հաց ուտենք։

— Ուտենք, բա ի՞նչպես,— ասում է հերը ու նստում են։ Միանգամից քսան հաց, մի կուժ էլ մածնաթան են ուտում։

— Համա կերանք, հա՛, ապի,— ծիծաղում է տղան։

— Ընչի՞ չենք ուտի,— հպարտանում է հերը,— ես մի ասլան, դու էլ հո՝ ասլան բալա...

Մինչև իրիկուն հնձում են, հնձում, ուրիշները թե՝ հարյուր, նրանք տաս խուրձ էլ չեն կարողանում հնձել։

— Ապի, ախր քիչ հնձեցինք...— ասում է տղան։

— Դե ինչպես քիչ չհնձենք, որդի,— խեղճացած պատասխանում է ապին,— ես մի ծեր մարդ, դու էլ մի մատ երեխա...

ՎԻԿՏՈՐ ԿՈԺԵՎՍԿԻ

# ՉՄՈՒՇԿՆԵՐ

Չմուշկներս կապեցի
Ու սղղալու վազեցի:
Ամբողջ գետակն եմ անցնում,
Բայց, տես, երբեք չեմ ընկնում:
Հարթ սառույցը կապուտակ
Ճռռում է իմ ոտքի տակ,
Չորս կողմ կայծեր շաղ տալիս:
Բամբի, հասի՛ր, չե՞ս գալիս:
Հենց որ մի քիչ հոգնում եմ,
Էլ չեմ սղղում, կանգնում եմ,
Ոտքիս տակն եմ նայում ես.
Ջուրն ակվարիում է կարծես:
Պղպջակներ... Մի ծածան
Երևաց ու չքացավ:
Ահա նաև մի մանակ.
Ո՞վ է դրել սառցի տակ:
Ինձ պատում է զարմանքը.
Ճնշում է այդ մանակը.
Խռիկներն է ուռեցնում,
Լողակներն է ծածանում:
Ա՛ռ, քեզ, խփում եմ սառցին,
Ձուկն է փախչում նույն պահին:
Լավ, գայլաձուկ, դու գնա,
Տեղդ արդեն իմացա.
Երբ որ նորից գա ամառ,
Քեզ կբռնեմ անպատճառ:

# Կաղիններ

Հովիտներով ու լեռներով
Աշնան էինք մենք գալիս,
Լիալուսինն առաջ ընկած՝
Ճանապարհն էր ցույց տալիս:

Խոր կիրճներ էր մեզ դեմ բացում,
Լերկ ժայռեր ու անտառներ,
Սպասում էր, որ լեռնանցքից
Մեր փնացքը դուրս վազեր:

Ամպից-ամպ էր սահում արագ
Կամուրջներով երկնային,
Որ երբ հասնենք կապույտ Սևան,
Արծաթ շաղ տա մեր ճամփին:

# Լուսնկա

Երբ դուրս գաս տանից, կաղնին անտառում
Կդիմավորի քեզ մտերմաբար:
Սկյուռն նստանդով կաղին է թափում,
Որ տանի, դարձնի ձմեռվա պաշար:
Եկավ մի տղա... ծառն իր ճյուղերից
Նրա ոտքի տակ թափեց չոր տերև.
Ահա մի կաղին ցած ընկավ վերից.
Եվ տղան հանեց գլխարկը. «Բարև՛»:
Ուրիշ կաղիններ ահա ընկան ցած,
Իբր թե՛ ասեք, ինչքա՞ն ենք անվախ:
Տղան մոտենում ու փեշը բռնած՝
Այդ կաղիններն է հավաքում արագ:
Պատանու սիրտը հրճվանքով է լի.
Բայց ի՞նչ է դրա պատճառը, գիտե՞ք.
Նրա գրպանում անտառն է գալիք...
Օ՜, բարի եղեք, կաղիններ, թափվե՛ք:

# Սպիտակ ԳԻՐՔ

Ընտիր դահուկներ, ձյուն համատարած.
Չկա ճանապարհ ուրախ ավելի:
Ձմեռն է կախել ճյուղերից սառած
Եղյամի արծաթ նախշերը էլի:

Ով էլ մեզ տեսնի, կասի զարմանքով.
Էստաֆետա՞ է, ի՞նչ խումբ է անցնում:
Նապաստակների խորամանկ հետքով
Ձյունը ճեղքելով առաջ ենք գնում:

Կապտին է տալիս անտառը հեռվում.
Մեզ լավ են ծանոթ վայրերն հայրենի...
Տես, հողմաղացն է բլրից երևում.
Ահա այն մնած նապաստակ լինի:

Այս շոգեկայքը կյանքով է լցուն.
Սուլոցով թռչում, փախչում են ձորից
Խածկտիկները կարմրակուրծք, սիրուն.
Եվ մենք առաջ ենք սլանում նորից:

Սառնամանիք է, բայց մենք համարձակ
Գնում ենք առաջ, սուրում ենք դարձյալ.
Ձմեռն է բացել իր գիրքն սպիտակ.
Եվ սովորում ենք այդ գիրքը կարդալ:

Ռուսերենից թարգմ.
Գ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ




Ռ. ԱԲԱԼՅԱՆ        Նկ. Ռ ՀՈՎԻՎՅԱՆԻ

Այնպես էլ ես չիմացա նրա իսկական անուն-ազգանունը։ Միայն գիտեի, որ բոլորը նրան Լի են կոչում, ու որ դա նրա իսկական անունը չէ։ Բայց հետո բոլորս էլ վարժվեցինք, և արդեն ոչ մեկին չէր հետաքրքրում նրա իսկական անունը։ Միայն թե նրա մասին շատ հետաքրքիր բաներ էին պատմում։ Լին 25 տարեկան էր, եկել էր Չինաստանից։ Նա թեև ուներ բոլորովին մանկական դեմք, բայց սաթի պես սև ու հարթ մազերի մեջ արդեն սպիտակին էին տալիս արծաթե թելերը։

Պատմում էին, որ երբ Չինաստանում սկսվում է ազատագրական մեծ պատերազմը, չին պարտիզանները գրավում են նրանց գյուղը և վռնդում զավթիչներին։ Ճապոնական բանդայի հրամանատարին հաջողվում է թաքնվել Լիենց տան բակում։ Նկատելով նրան, Լիի մայրիկը այդ մասին հայտնում է պարտիզաններին։ Թշնամին գերի է վերցվում, իսկ հաջորդ օրը զավթիչները խոշոր ուժերով ներխուժում են գյուղ։ Պարտիզանները ստիպված են լինում ժամանակավորապես նահանջել։ Եվ ահա մի սոսր լուրս մատնում է Լիի մորը։ Թշնամիները հենց Լիի ներկայությամբ հանում են նրա մոր աչքերը և ասում.

— Այս նրա համար է, որ դու այլևս մեզ չտեսնես։

Մի քանի օրից հետո, չին հայրենասերներն ազատագրում են գյուղը և վրեժ լուծում այդ ծանր հանցագործության համար, բայց Լիի սրտից երբեք չի դուրս գալիս այդ մեծ ցավը։ Ու դրա համար էլ ջահել աղջկա մազերն արդեն ճերմակել էին։

Կյանքի այսպիսի տխուր պատմություն ուներ Լին, ու զարմանալի էլ չէր, որ նա քիչ էր ծիծաղում։ Ժպիտը կարծես մոռացել էր այդ լավ աղջըկան, թեև նա շրջապատված էր իր չին և ռուս ընկերների ջերմ սիրով։

Լին սովորում էր մեզ հետ՝ Մոսկվայի բարձրագույն դպրոցներից մեկում։ Նա բոլոր ուսանողների սիրելին էր, ընկերը։ Սակայն ամենից շատ կապված էր փոքրիկ Դաշայի հետ։ Իսկ Դաշան էլ հո կրակի կտոր էր։ Շեկլիկ, գանգուր մազերով, մկնիկի պես փոքրիկ, կապույտ աչիկներով Դաշան, ճաշարանի խոհարար Մարիայի աղջիկն էր. ընդամենը 6 տարեկան էր, բայց այնպես չարաճճին էր, որ ուղղակի պատմելու բան չի։ Նա հաճախ էր գալիս ճաշարան՝ իր մայրիկի մոտ։ Լին հենց ճաշարանում էլ ծանոթացավ նրա հետ։

Դասերից հետո էր. բոլորը գնացել էին ճաշելու։ Դաշան մայրիկի մոտ էր եկել։ Նախասրահում վազվզելուց հետո նա նկատեց Լիին ու համարձակորեն մոտեցավ։

— Դու չե՞ս հոգնել, Դաշկա.— քնքշորեն շոյելով նրա փափլիկ մազերը, հարցրեց Լին։

— Իսկ ես դեռ չեմ ճանաչում ձեզ,— զարմացած ասաց Դաշան,— որտեղի՞ց գիտեք իմ անունը։

— Քեզ բոլորն են ճանաչում,— մի պահ անակընկալի եկավ Լին,— դե արի ծանոթանանք, իմ անունը Լի է։

Դաշան ուրախ բրբջաց, շողացրեց մկնիկի աչքերն ու փորձեց դուրս պրծնել իր նոր ծանոթի ձեռքից։ Սակայն Լին նրան բաց չթողեց։

— Սպասիր, Դաշա, ո՞ւր ես փախչում, չէ՞ որ դու խելոք աղջիկ ես։

Դաշան նորից ուրախ ծիծաղեց։

— Իսկ մայրիկն ասում է, որ ես չար եմ: Ուրեմն մայրիկը ճիշտ չի՞ ասում, — խորամանկորեն հարցրեց Դաշան։

— Եթե չարություն ես անում, իհարկե, ճիշտ է ասում։

Դաշան մի պահ լռեց ու կախեց գլուխը։

— Այ, ես էլ մի քույրիկ ունեմ, ճիշտ քեզ նման, նա էլ քեզ նման չարաճճի է, բայց երբ ես գալիս էի այստեղ, նա ինձ խոստացավ խելոք մնալ և մայրիկին չբարկացնել։ Ախր, իմ մայրիկը չի տեսնում։— Լին այս խոսքերն ասաց գրեթե իր կամքից անկախ ու ցնցվեց։ Նրա դեմքն իսկույն մռթնեց, աչքերը մշուշվեցին։

Տխրեց նաև Դաշան։

— Իսկ դուք կգա՞ք մեր տուն,— հարցրեց նա։

Աշխատելով չվշտացնել փոքրիկին, Լին գլխով

դրական շարժում արեց։ Դաշան ուրախացած պոկվեց նրանից ու դուրս վազեց։

Այսպես սկսվեց Դաշայի և Լիի մտերմությունը։

* * *

Դեղնածամ աշունն անցավ։ Կուսկովոյի անտառը մերկացավ, գետինը եղյամակալեց։ Շերեմետևյան լճակը սկսեց սառչել։ Դաշան արդեն քիչ էր հաճախում ճաշարան։ Իսկ երբ գալիս էր, հայացքով որոնում էր միայն Լիին։ Երբ նրան չէր հաջողվում հանդիպել, Դաշան տխուր հեռանում էր ճաշարանից։

Լին հաճախ էր լինում Դաշայենց տանը, դասերից ու պարապմունքներից ազատ ժամերին խաղում էր նրա հետ և ուրախ էր, որ այդպիսի փոքրիկ, բայց շատ հաճելի բարեկամուհի ունի։ Չգիտես ինչու, Լին Դաշային նմանեցնում էր իր փոքրիկ քրոջը, որին նա անչափ կարոտել էր։ Իսկ Դաշայենց տանը այնպիսի ջերմությամբ էին ընդունում նրան, որ ամեն անգամ Լիին թվում էր, թե հենց իրենց տունն է մտնում։

Իսկ ինչպիսի՜ ուրախություն էր երկուսի համար էլ, երբ միասին զբոսանքի էին գնում։ Լին էլ, Դաշան էլ սիրում էին Կուսկովյան անտառում զբոսնել ու անսահման հաճույք էին զգում, երբ գիշերվա ցրտից սառած ձյունը ճռճռում էր ոտքի տակ։ Հաճախ այդ զբոսանքները երկար էին տևվում, հաճախ՝ կարճ, նայած թե ինչպիսի եղանակ էր լինում։

Հունվարի կեսերին էր։ Ցուրտն արդեն հասնում էր 35 աստիճանի։ Ծառերն այնպես էին եղյամակալում, որ թվում էր, թե բամբակով են ծածկված. ոչ մի ճյուղ, ոչ մի թուփ մերկ չէր մնում։ Իսկ երբ ամպի տակից գաղտագողի դուրս էր սողում ձմռան ցուրտ, գունատ արևը, ծառերի ճյուղերին նստած ձյունափոշին փայլփլում էր հազար ու մի գույնով։

Կիրակի առավոտ էր, նախաճաշից հետո, երբ Դաշան ամուր փաթաթված վերարկուի մեջ, մտավ հանրակացարան և անհամբեր թակեց այն սենյակի դուռը, որտեղ ապրում էր Լին։ Նրանք իրար հանդիպեցին ուրախ ճիչով։

— Քանի՞ օր է, չես գալիս, ախր ես կարոտել եմ քեզ,— գանգատվեց Դաշան։

— Տեսնո՞ւմ ես, ես ինչքան զբաղված եմ, քննություն եմ տալիս, պետք է լավ պարապել,— արդարացավ Լին։

— Պա՜հ,— նեղացած գոչեց փոքրիկը,— մեծ բան է, էլի, հո չի կարելի ամբողջ օրը պարապել…

Լին սրտանց ծիծաղեց, նորից գրկեց Դաշային և ամուր համբուրեց։

— Դե, արի գնանք մեզ մոտ։ Մայրիկն ասաց, որ,— Դաշան ամուր կախվեց Լիի պարանոցից, ականջին շշնջաց,— ասաց, որ մեզ համար կարկանդակ է պատրաստելու, հետո ասաց, որ անպայման գաս։

— Ո՜չ, ինչքա՜ն եմ սիրում մայրիկի թխած կարկանդակը,— ասաց Լին,— բայց չեմ կարող, Դաշենկա, պետք է պարապեմ։

— Դե որ… չես ուզում…,— Դաշան քիչ մնաց հեկեկար,— որ… չես ուզում… գնանք… ման գալու…

Լին այլևս չկարողացավ դիմանալ, արդեն ուժ չուներ մերժելու Դաշայի երկրորդ խնդրանքը։ Նա մի վճռական շարժումով դեն նետեց տետրերն ու գրքերը և վեր կացավ։ «Զբոսանքից հետո ավելի լավ կպարապեմ»— մտածեց նա։ Իսկ քիչ հետո փոքրիկ աղջիկն արդեն ուրախ ճռվողյունով վազում էր դեպի անտառ։



Ձմեռվա անտառը հեքիաթի նման էր։ Գետինը ծածկված էր ձյան հաստ շերտով ու, թեև ձյուն չէր գալիս, բայց ծառերի ճյուղերից անընդհատ ճերմակ փաթիլներ են թափվում. թափվում են, ու թափվում, ու քիչ հետո գլխարկն ու վերարկուն ամբողջովին ծածկվում են ձյունով։ Իսկ որքան հաճելի է վազվզել ծառերի արանքում, թաքնվել ձյունաթմբերի տակ, թավալել սառը ձյան մեջ, ձնագնդի կամ աչքակապուկ խաղալ։

Լին արդեն վաղուց մոռացել էր պարապելու մասին ու ամբողջովին մանկացել։

Ցուրտ անտառում զնգում էր նրանց զվարթ ծիծաղը։ Նրանք վազվզում էին, իրար խփում ձնագնդիկներով և անընդհատ հեռանում դպրոցից։ Լին հաճելի խաղից սթափվեց միայն այն ժամանակ, երբ անտառով մեկ սվսվաց քամին ու ձյուն տեղաց։ Նա նոր միայն զգաց, որ ցուրտ է, որ ինքն ամբողջովին թրջվել ու արդեն մրսում է։ Բայց այդ պահին նա մտածում էր ոչ թե իր մասին, այլ Դաշայի։

— Դե, բավական է, Դաշա․ գնանք տուն,— վախենալով, որ փոքրիկը կմրսի, ասաց Լին,— արդեն ցուրտ է, և ուշ էլ է։

Երբ նրանք անտառից դուրս եկան, քամին արդեն ուժեղացել էր և ցուրտը սաստկացել։ Ձյունափոշին խփում էր նրանց դեմքին, լցվում աչքերը, օձիքից սողում ներս, խցկում ականջները։ Ճանապարհն արդեն ծածկվել էր ձյան հաստ շերտով։ Նրանք դժվարությամբ էին քայլում, իսկ մինչև հանրակացարան կամ Դաշայենց տուն դեռ ահագին ճանապարհ կար անցնելու։

— Լի՛,— նվաց Դաշան,— ես մրսում եմ…

— Դե արագ քայլենք,— Լին վախեցած ամուր սեղմեց փոքրիկի ձեռքը և զգաց, թե ինչպես է սառչում նրա թաց ձեռնոցը։— Վազենք, Դաշենկա, կտաքանանք։

— Ախր ես հոգնել եմ, Լի…

Ի՞նչ անել․ Լին էլ ավելի անհանգստացավ, շփոթվեց։ Վերջապես գլխի ընկնելով, նա գրկեց Դաշային և, ինչքան ուժ ուներ, արագ քայլեց դեպի տուն։ Բայց դեռ մի հիսուն քայլ էլ չէր արել, երբ փոքրիկը նորից գանգատվեց։

— Լի՜, ես մրսում եմ…

Այն ժամանակ Լին բացեց վերարկուի կոճակները, փոքրիկին սեղմեց կրծքին, փեշերով ամուր փաթաթեց Դաշային ու ծանր շնչելով շարունակեց ճանապարհը։ Սակայն քանի գնում, քայլելն այնքան դժվարանում էր, և Դաշան էր խանգարում, և ամուր սեղմած վերարկուն։

Եղավ մի պահ, երբ Լին արդեն շնչասպառ էր լինում։ Նա մի պահ կանգնեց շունչ առնելու համար և, նոր միայն նկատեց, որ Դաշայի ոտքերը դուրս են ընկել վերարկուի տակից։ Նա փորձեց փոքրիկի ոտքերը ներս տանել, փաթաթել, բայց չստացվեց։ Եվ սարսափած այն մտքից, որ Դաշայի ոտքերը կսառչեն, նա արդեն առանց երկար մտածելու, փոքրիկին վար դրեց, հանեց վերարկուն, և ամուր փաթաթեց նրան։ Ու միանգամից զգա՛ց, թե ինչպես է ցուրտը վայրի կատվի պես սողում դեպի քրտնած մեջքը։ Մի պահ նրան թվաց, թե հիմա կսառչի, բայց վճռական շարժումով նորից գրկեց երեխային ու քայլեց առաջ։ Ինչքա՞ն ժամանակ անցավ, ինքն էլ չի հիշում։ Չի հիշում նույնիսկ, թե ինչպես է կտրել անցել այդ ահագին ճանապարհը, Դաշային հասցրել տուն։

*
* *

Երբ Լին աչքերը բացեց, սնարի մոտ տեսավ մի աղոտ, բայց հարազատ դեմք։

— Մայրիկ…,— շշնջացին նրա շուրթերը։ Նա նորից աչքերը փակեց ու կարծես տեսավ գետափին կանգնած իրենց տունը ու ճերմակ ծաղիկներով ծածկված խնձորենու տակ, փակ աչքերով, ժամանակից շուտ զառամած, տանջահար դեմքով մորը։

Տաք և փափուկ մի ձեռք, ոչ այնպիսին, ինչպես մայրիկն ունի, շոշափում է նրա ճակատը, ու Լին չի հասկանում, թե ե՞րբ մայրիկի ձեռքերն այդպես փափկացան։ Ապա նա դեմքին զգաց շուրթերի հպումը և չհասկացավ, թե ինչպե՞ս մայրիկը կարողացավ տեսնել իրեն, չէ՞ որ ինքը դեռ չի մոտեցել նրան։ Ու սթափվեց։ Սնարի մոտ նստած էր Դաշայի մայրը, իսկ մահճակալի ծայրին կուչ էր եկել իր փոքրիկ բարեկամուհին։

— Լի՛,— ճչաց Դաշան,— Լի՛…

Մայրը ձեռքի շարժումով լռեցրեց նրան և էլ ավելի թեքվեց Լիի վրա։ Հիմա Լին պարզորոշ տեսավ նրա դեմքը, որին մեխված վիշտը կարծես ակոսվել էր առաջին ուրախությամբ։

— Լի, սիրելիս, դու արդեն լա՞վ ես զգում քեզ,— դողացող ձայնով հարցրեց Դաշայի մայրը։

Եվ ակամա, ինքն էլ չիմանալով ինչպես, Լին պատասխանեց.

— Այո, մայրիկ, լավ եմ…

Ու դրանից հետո նա տեսավ, թե ինչպես Մարիայի դեմքին գարնան ծաղկի պես բացվեց ժպիտը ու Դաշան ուրախ ճիչով նետվեց իր գիրկը։

Բայց Լին գլխի մեջ, ձեռքերին, ոտքերին սուր ցավ էր զգում։ Նա հասկացավ, որ հիվանդ է, ձեռքերն ու ոտքերը ցրտահարվել են։

— Մի վախենա, սիրելիս, ցրտահարությունը թեթև է, բժիշկն ասաց, որ ոչ մի վտանգ չկա և դու մի քանի օրից վեր կկենաս,— ասաց Դաշայի մայրը։

Ու հետո Լին իմացավ, որ Մարիան երկու անքուն գիշեր է անցկացրել իր սնարի մոտ, ու Դաշան բոլորովին չի քնել, որ իրեն պահել են փոքրիկ բարեկամուհու տանը և չեն թողել, որ տանեն հիվանդանոց։ Եվ հուզմունքի ալիքը ողողեց նրա ամբողջ էությունը։ Կոկորդը սեղմվեց հեկեկանքից, ու աչքերը մշուշվեցին անզուսպ կերպով հորդող արցունքից։ Ու այդ մշուշի մեջ նա նորից տեսավ իր տունն ու այգին, իր մորը, որը չգիտես ինչու, ունի խորունկ, կապույտ աչքեր, արևի շողի պես վառվող մազեր ու ժպտուն հայացք։

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ



## ՆԿԱՐ ԵՄ ԱՆՈՒՄ

Վ. ՄԽԻԹԱՐՅԱՆ

Կար է անում տատիկս,
Կողքին մռռան փիսիկը.
Տետրը առջևս դրած՝
Նկարում եմ ես նրանց։

Լավ է նստած տատիկս,
Ու չի շարժվում փիսիկը,
Որ մի քիչ էլ սպասեն,
Տետրում իրենց կտեսնեն։

# ՀՄՈՒՏ







Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Այստեղ հսկա էքսկավատորն է կանգնել կնճիթը դրած զբոսանավի կայմին։ Նրա ու շոգեմեքենայի միջև մի ինքնաթիռ է վայրէջք կատարել։ Մի քիչ այն կողմ կանգնած է ծանր հրետանին՝ փողը ցցած։ Այստեղ կան նաև զանազան մեքենաներ, գործիքներ ու սարքավորումներ։

Բայց դու, փոքրիկ ընթերցող, մի շփոթվիր։ Սրանք միայն մոդելներ են, որ կառուցել են քեզ նման փոքրիկ ու ջանասեր երեխաները։ Մոդելների վրա կան մակագրություններ, որոնք մատնանշում են մեքենայի տե.ակը և փոքրիկ կոնստրուկտորին։ Շաբաթական մի քանի անգամ «Հմուտ ձեռքեր» խմբակի անդամները հավաքվում են ֆիզիկայի լաբորատորիայում կամ դպրոցական արհեստանոցում և սկսում իրենց պարապմունքը։ Խմբակի և գործնական աշխատանքի դասերի ղեկավար Շահրիմանյանը յուրաքանչյուր աշակերտի հանձնարարում է որևէ մոդելի կառուցման պլանը, և նրանք ուսուցչի ցուցումներով սկսում են իրենց աշխատանքը։ Այստեղ ապակեպատ վանդակում տեղավորված է բարդ ու հետաքրքիր մի մոդել։ Դա ջերմաէլեկտրակայան է՝ զարմանալի հմտությամբ հյուսած բարդ սարքավորումներով։ Դրա կառուցումը շատ ջանքեր պահանջեց։ Մի օր Այդինյան Էդիկը և Ղազանչյան Պետրոսը իրենց մտահղացման մասին հայտնեցին գործնական աշխատանքի ղեկավարին։ Նա ջերմորեն ընդունեց այդ հետաքրքիր առաջարկը։ Էդիկին ու Պետրոսին միացան նաև Փայլակը, Ալբերտը և ուրիշներ։ Նրանք պլանավորեցին իրենց աշխատանքը։ Նախ մանրամասն նախագիծ կազմեցին։ Մասերից մի քանիսը պատրաստի ձեռք բերին, մնացածն էլ իրենք շինեցին։ Դրանք փոքրիկ տրանսֆորմատորներ էին, գեներատորներ, շոգետուրբիններ, չափիչներ և այլն։ Հետո տղաներից ամեն մեկը սկսեց մոնտաժել որևէ մասը։

Ինչպիսի՜ ոգևորությամբ էին աշխատում նրանք, ինչպիսի՜ լրջությամբ։ Ասես թե իսկական կառուցող-ինժեներներ լինեին։



# ՁԵՌՔԵՐՈՎ

Նկ. Ա. ՋԱՔԱՐՅԱՆԻ



Եվ ահա մի քանի պարապմունքում գործը գլուխ եկավ։ Իսկ ինչքա՜ն բան սովորեցին։ Նրանք այնքան լավ յուրացրին ֆիզիկայի էլեկտրականության բաժինը, որ այլևս չեն մոռանա։

Ռեսպուբլիկայի դպրոցականների տեխնիկական ցուցահանդեսում բարձր գնահատականի արժանացավ անցած ուս-տարում կառուցված այդ ինքնաշեն ջերմաէլեկտրակայանը։

Ահա շոգեմեքենայի մի մոդել, այսպիսի մակագրությամբ՝ «Շոգեմեքենա, 1956 թ. Վարդանյան Ռուդիկ, 6-րդ դասարան»։ Ամեն անգամ այդ մոդելին նայելիս Շահրիմանյանը համակվում է այն զգացումով, ինչպիսին կունենար այգեպանը բնության աղետներից փրկած իր խնձորենուն նայելիս։

Ռուդիկը հաճախ դասերից բացակայում էր, տրամվայների պոչից կպած փողոցները շրջում, դասերը վատ էր սովորում և անկարգություն անում։

Եվ ահա գործնական աշխատանքի դասերին Շահրիմանյանը նկատեց, որ Ռուդիկը առանձին հակում ունի դեպի ձեռքի աշխատանքը։ Նա սկսեց խրախուսել այդ բանը, և Ռուդիկը քիչ-քիչ սկսեց ավելի լավ սովորել, չբացակայել և, որ ամենակարևորն է, գտավ մի գրավիչ զբաղմունք։ Նա սկսեց մոդելներ պատրաստել, մետաղամըշակման մամլակի վրա կտրիչներ, զանազան գործիքներ շինել։

Եվ այսպես, Ռուդիկը գտավ ինքն իրեն, գտավ իր գործը, մի բան, որ վճռական դեր է խաղալու նրա հետագա կյանքում։ Նա արդեն որոշել է մտնել գործարան և դառնալ փականագործ։ Իսկ այդ բանի համար Ռուդիկը արդեն պատրաստ է։

Ահա թե ինչ տվեցին Ռուդիկին «Հմուտ ձեռքեր» արտադասարանական խմբակի պարապմունքները և գործնական աշխատանքի դասերը։

Մի այլ սենյակում դրված տասնյակ մամլակները, խառատային մեծ հաստոցն ու մյուս գործիքները տեսնելիս, մի պահ կարող է թվալ, թե մարդ գործարանի որևէ ցեխում է գտնվում, բայց սա դպրոցական արհեստանոցն է, որտեղ աշակերտները անց են կացնում գործնական աշխատանքի դասեր։ Այստեղ քանդված վիճակում դասավորված է մի ամբողջ ավտոմեքենա, որ ուսումնասիրում են բարձր դասարանի աշակերտները։ Շուտով արհեստանոցը կըստանա նաև տրակտորի ու կոմբայնի մասեր։

Բացի այդ, աշակերտները գործնական աշխատանքի ժամերի մի մասը անց են կացնում Ջերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում։ Յուրաքանչյուր երկու աշակերտ լինում է մեկ վարպետի մոտ։ Աշակերտները լինում են նաև պոլիտեխնիկական ինստիտուտի էլեկտրալաբորատորիայում, որտեղ ուսումնասիրում են էլեկտըրամեքենաների կառուցվածքը։





Ահա այսպես, նրանք ստանում են և՛ տեսական, և՛ գործնական գիտելիքներ։ Դրա շնորհիվ նրանցից ամեն մեկը կարող է վճռել, թե ինքը ինչ է դառնալու, ինժենե՞ր, բանվո՞ր, գյուղատնտե՞ս, թե այլ բնագավառի աշխատող։ Միջնակարգ դպրոցի վերջին երեք տարում անցկացրած պրակտիկ դասընթացի համար հասունության ատեստատի հետ միասին նոր շրջանավարտները կստանան նաև մասնագիտական դիպլոմ։ Այնուհետև նրանց համար հեշտ կլինի կողմնորոշվել ուսման և աշխատանքի հարցերում։ Նրանք կդառնան բազմակողմանիորեն զարգացած քաղաքացիներ։














Զ. ԴԱՐՅԱՆ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Հին զրույց է, ով գիտի՝ քանի հարյուր տարվա: Երկու զանգեզուրցի, մեկը Վաշագան անունով, մյուսը՝ նրա ընկերը, վեր են կենում, գնում են աշխարհն-աշխարհ բախտ որոնելու: Քառասուն անգամ յոթն օր ու գիշեր գնում են, գնում, հանդիպում են ճամփի մեջտեղը նստած ճերմակ մորուքով մի ծերունու: Խոնարհ գլուխ են տալիս, կանգնում են նրա առաջ:

— Բարով եք եկել, ասում է ծերունին,— ես ձեր որոնած բախտն եմ, ի՞նչ եք ուզում, որ տամ...

Նրանք կրկին գլուխ են խոնարհում, և Վաշագանը առաջ գալով, ասում է.

— Ո՜վ իմաստուն ծերունի, ես քաջություն եմ ուզում քեզանից: Մեր երկրով շատ հարամիներ են անցնում, շատ արյուն է հոսում մեր ձորերով, ու առանց քաջության ապրել չի լինում...

— Իսկ ես,— ասում է մյուսը խոր երկրպագելով,— անմահություն եմ խնդրում, ո՜վ ամենակարող մարդ, ուզում եմ ապրել մեր լեռների արծիվների հետ ու էն բարձրությունից նայել, քանի աշխարհը կա... ես սարսափում եմ մահից...

— Թող ձեր ուզածը լինի,— ձեռքը բարձրացնում է իմաստունը,— գնացեք ձեր աշխարհը և ապրեք՝ մեկդ քաջի ու մյուսդ անմահի կյանքով...

Ուրախ-ուրախ ետ են գալիս Վաշագանն ու մյուսը և հենց մտնում են Զանգեզուր թե չէ՝ տեսնում են հարամու զորքը շեները քար ու քանդ անելով առաջ է գնում: Վաշագանը ձի է հեծնում, թուր կապում մեջքին ու կայծակի պես ընկնում թշնամու վրա, աջ ու ձախ կոտորում: Իսկ մյուսը քաշվում է Հալիձորի մի խուլ քարայր, պինդ ամրացնում անցքերը, որ թշնամին իրեն չըտեսնի ու էնտեղից ականջ է դնում աշխարհի անց ու դարձին:

Վաշագանի քաջությունը տեսնելով, գյուղացիներն իրենք էլ նետ ու աղեղ առած՝ վրա են տալիս, ջարդում թշնամուն, թափում Ողջի գետը: Կռվի թունդ միջոցին մի նետ գալիս է դիպչում Վաշագանի սրտին ու սպանում: Գյուղացիները առոք-փառոք թաղում են նրան անտառի ծայրին մի բարձր տեղ, չուրջը նոր շեն են հիմնում ու անունը դնում Վաշագան:

Մինչև հիմի էլ Ղափանի շրջանում, Կապուտջիղ լեռան ստորոտին էդ շենը կա ու նակատին քաջի անունը՝ Վաշագան:

Ասում են դեռ ապրում է մյուսը Հոլիձորի մի խոր քարայրում: Ծերացել է, աչքը՝ լույսի, ականջը՝ ձենի կարոտ: Ոչ ոք չգիտի նրա տեղը, մինչև հիմի ոչ մի մարդկային ոտք չի անցել նրա քարայրի կողքով: Մարդիկ նրա անունն էլ չգիտեն, իսկ երբ նրանց մասին խոսք է բացվում, ասում են՝ Վաշագանն ու մյուսը...





Կարինեի ճանապարհորդությունը Լենինականից Երևան շատ ուրախ անցավ: Մայրիկի հետ դուրս նայելով գնացքի պատուհանից, նա անվերջ ճլվլում էր: Խոսում էր Երևանի մասին ու այն դպրոցի մասին, ուր ինքը սովորելու էր:

Եվ ահա նա դպրոցի բակում է: Բզզում է երեխաների բազմությունը: Նրանցից մի քանիսը Կարինեի նման Լենինականից էին եկել, երևանցիներն էլ շատ էին. տղաներ ու աղջիկներ կային նաև այնպիսի գյուղերից ու քաղաքներից, ուր Կարինեն դեռ ոչ մի անգամ չէր եղել:

— Բալիկներս, սա էլ ձեր տունը,— ասաց մի պապիկ, ցույց տալով նրանց չորս հարկանի ահագին շենքը: Այստեղ կապրեք, այստեղ էլ կսովորեք...

— Էսքան մեծ տո՞ւն,— զարմացավ մի փոքրիկ աղջիկ՝ կարճլիկ, շեկ հյուսքերով:

Հա՛, բալա՛ս, բա ինչպե՞ս: Ուզում ես ձեր տան նման փոքրի՞կ լիներ: Քանի՞ երեխա կա ձեր տանը: Երկո՞ւ: Իսկ այս տանը հարյուր ութսուն երեխա է ապրելու:

«Հարյուր ութսո՜ւն», — մտքում զարմացավ Կարինեն: Զարմացավ և ուրախացավ, որ իրենք այդքան շատ են լինելու:

Հետո երեխաները զույգ-զույգ շարք կանգնեցին բակում. առաջ փոքրերը, հետո՝ մեծերը, ու այդպես շարքով էլ դպրոց մտան: Միջանցքներն այնքան ընդարձակ էին, մաքուր: Անցավ երեխաների շարքը փափուկ ուղեգորգերի վրայով, ու մի շշուկ չլսվեց: Հետո ուսուցչուհին ցույց տվեց նրանց մի լուսավոր սենյակ՝ շարք-շարք դրված նստարաններով: Սենյակի մի պատը բռնել էր փայլուն գրատախտակը: Պահարաններում տասնյակ գեղեցիկ պայուսակներ, դասագրքեր, տետրեր, նկարչական

ալբոմներ, սև ու գունավոր մատիտներ կային: Հաշվիչ էլ կար սենյակում: Ուսուցչուհին ասաց, որ այդ բոլորը նրանց՝ առաջին դասարանցիների համար է:

Այդ օրը բացվեցին ու ծածկվեցին շենքում եղած բոլոր սենյակների դռները:

...Դահլիճի բաց պատուհաններից ուրախ ծափ ու ծիծաղ էր լսվում: Զվարճության երեկո էր: Գևորգն ակորդեոն էր նվագում, պարում էին Լալան ու Ալիսան: Դահլիճում հավաքված երեխաները միահամուռ ծափ էին տալիս իրենց փոքրիկ թաթիկներով:

Լալիս: Մայրիկի համա՞ր: Կարծում ես, թե դժվա՞ր է մայրիկին կանչել: Չէ, Կարինե, կկանչենք, միայն թե դու ասա, ուզում ես գնա՞լ մեր դպրոցից:

Կարինեն հիշեց ընդարձակ խաղասենյակը, իրենց դասարանը՝ ուլիկի ու թիթեռնիկի նկարներով, կինոյի դահլիճը, տեսավ իր նոր ընկերուհուն, որ կողքի մահճակալին նստած, նրան էր նայում իր բարի, զարմացած աչիկներով, ու զսպված հեծկլտոցի միջից պատասխանեց.

— Չէ, ես կմնամ...

ճաշ եփել: Պետք է այնպես անել, որ կերակուրը թե՛ համեղ ու սննդարար լինի, թե՛ բազմազան:

Փոքրիկ գոգնոցներ կապած մի քանի աղջիկ պտտվում են սեղանների շուրջը, փոխում սփռոցները, դասավորում անձեռոցիկներն ու դանակ-պատառաքաղը: Դրանք խոհարարուհու օգնականներն են՝ օրվա հերթապահները:

Զանգի հատուկ ղողանջը դպրոցի բոլոր անկյուններն հասավ ու դասարան կանչեց երեխաներին:

# Գիշերօթիկ դպրոցում

Այնպես արագ անցավ այդ օրը, որ երեխաները զարմացան:

Եվ ահա խումբ-խումբ նրանք գնում են դեպի ննջարանները: Հանվեցին նրանք, շքեղ պահարաններում խնամքով կախեցին իրենց նոր համազգեստները, որ առավոտյան տվել էր տնտեսուհին՝ Ցողիկ մորաքույրը, ու անկողին մտան: Ու երբ դայակը՝ Աննա մորաքույրը խնամքով ծածկեց բոլորին ու ասաց. «Բարի գիշեր, բալիկներ», Կարինեն հիշեց իրենց տունը, մայրիկին ու այնպե՜ս կարոտեց: Նրան թվաց, թե ինքը վաղուց, շատ վաղուց է այստեղ ու, մայրիկն այնպես հեռու է: Հանկարծ նրա վերմակը դողաց ու սենյակի լռության մեջ խուլ հեծկլտանք լսվեց:

— Մայրիկիս եմ ուզում, ինչո՞ւ գնաց...

Բայց մենակ չէր Կարինեն: Դայակի փափուկ ձեռքն արդեն շոյում էր նրա մազերը: Նրա գլխավերևն արդեն կանգնած էր դաստիարակչուհի՝ Օրդուխանյանը և ասում էր.

— Սուս, Կարինե, ինչո՞ւ ես

* * *

Առավոտ է: Ոտքերով թփթփացնելով, դեպի ֆիզկուլտուրայի դահլիճն է վազում կիսամերկ երեխաների մի խումբ: Լողարանում արդեն գործի է անցել տնտեսուհին. այսօր պետք է լողացնել փոքրիկներին, իսկ խոհանոցում, եռացող կաթսայի կողքին կանգնած, փոքրիկ պատուհանից դեպի սեղանատուն է նայում ավագ խոհարարուհին: Հասարակ բան չէ ամեն օր հարյուր ութսուն մարդու համար

* * *

Հեքիաթը վերջացավ: Ռուբիկը ծածկեց գիրքը, բայց պատուհանին ուղղված նրա սևեռուն հայացքն ասում է, որ նրա միտքը հեռվում է: Նա ասես զգում է մութ գիշերվա ցուրտը, տեսնում է սառը մայթի վրա մեռած ոտաբոբիկ աղջկան ու նրա շուրջը թափված լուցկիները...

Ինչքա՜ն ցավ ու թախիծ, ինչքա՜ն ուրախություն ու ինչքա՜ն մտքեր բերեցին Ռուբիկին Անդերսենի հեքիաթները...



Լայն գրապահարանի մոտ կանգնած՝ ագահ հայացքով ապակեպատ փեղկի տակ շարված գրքերին է նայում երրորդ դասարանցի Պատվական Գևորգյանը: Շատ են գրքերը ու մեկը մյուսից հրապուրիչ: Ո՞րն ընտրել: Ու տղան այս անգամ ընտրում է «Առաջին գիրքը բույսերի մասին»: Ո՞վ գիտե, քանի հարցի պատասխան, քանի զարմանալի նորություն կգտնի նա այս գրքի էջերում:

Դպրոցի գրադարանը ընդարձակ է, լուսավոր ու խաղաղ: Այստեղ են գալիս նաև առաջին դասարանցիները: Նրանց համար հեքիաթներ են կարդում երբեմն՝ գրադարանավարուհին, երբեմն էլ՝ դաստիարակչուհին: Միջանցքում աղջիկների մի մեծ խումբ շրջապատել է դերձակուհի Մարգարիտ Միքայելյանին: Ինչի՞ մասին են զրուցում այդպես:

— Սովորելն առաջին հերթին,— ասում է դերձակուհին,— բայց աղջիկը պետք է ձեռագործ, կարուձև էլ իմանա:

Կարուձև ուզում են սովորել բոլոր աղջիկները: Սենյակում արդեն նրանց սպասում են կարի մեքենաները, արդուկները, մկրատները...

Տղաները նույնպես գործի են անցել:

— Եթե դուք լավ աշխատեք, մինչև դպրոցն ավարտելը լավ կոշկակար կդառնաք,— ասում է աշխատանքային հրահանգիչ Աբրահամ Ասլանյանը:

Օրվա որոշակի ժամերին արհեստանոցից հաստոցների աղմուկ ու մուրճերի թխկթխկոց է լսվում: Այնտեղ ատաղձագործի ու փականագործի մասնագիտություն են սովորում դպրոցականները:

* * *

Կիրակի է: Երեխաներն այսօր շատ սիրելի հյուրեր ունեն: Հյուրասրահում նրանք հանդիպում են իրենց ծնողներին ու հարազատներին: Շատերը տուն են գնում: Իսկ նրանք, ում հարազատները հեռվում են, նույնպես չեն տխրում: Ճաշից հետո երեխաները միասին զբոսանքի կգնան, հետո կինո կդիտեն դպրոցում: Իսկ հիմա՞:

Փոքրիկներն աչքակապուկ են խաղում, մի քանիսն էլ՝ գնդակ: Սպարտակ Խաչատրյանն ու Ռուբիկ Հովհաննիսյանը շախմատ են խաղում: Կարոն, Առաքելն ու Ժորան հետևում են «վարպետների» խաղին: Մի քանիսն էլ սեղանի մոտ նստած նամակ են գրում տուն՝ մայրիկին:

Լայն բազմոցի վրա նստած Կարինեն դուրս է նայում պատուհանից: Մերկացած ծառերից դողդողալով իջնում են վերջին տերևները: Ափսոս, որ Կարինեն դեռ բոլոր տառերը չգիտե: Թե գիտենար, ի՜նչ ուրախ նամակ կգրեր մայրիկին: Կպատմեր, որ ինքը շատ բաներ է սովորել ու երբ Նոր տարվա տոներին տուն գա, կպատմի... Վերջում կգրեր, որ ինքը ուրախ է, շատ ուրախ, սիրում է դպրոցը ու երբեք լաց չի լինում:

ՀՌ. ՂԱԶՈՅԱՆ

## ԵՐԳ ԱՌՎԱԿԻ, ԾԱՌԻ, «ԵՐԿՈՒՍՆԵՐԻ» ԵՎ ԱՐՄՈՅԻ ՄԱՍԻՆ

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

1

*Մի առվակ կա զուլալ*
*Արմոյենց տան մոտ.*
*Քչքչում է ամռան*
*Ամեն առավոտ,*
*Խոխոջում է, զնգում*
*Իր ջրերով պաղ՝*
*Գիշեր-ցերեկ անքուն,*
*Անհոգ ու ուրախ:*
*Բայց ձմեռ է արդեն,*
*Ու առվակն հիմա*
*Սառույցով է կապել*
*Ափերը իրար:*
*Հենց որ ձմեռն անցնի,*
*Գարուն գա կրկին,*
*Արմոն ծառ կտնկի*
*Առվակի ափին:*

2

*Մի հատապտուղ ծառ կա*
*Արմոյենց բակում.*
*Ամառները պառկած*
*Ծառի շվաքում՝*
*Արմոն գիրք է կարդում,*
*Կամ շինում տնակ,*
*Եվ սարյակն է երգում*
*Վերից շարունակ:*
*Բայց հիմա ձմեռ է*
*Ու ձյուն է եկել,*
*Եվ հատապտուղ ծառն էլ*
*Ճերմակ է հագել:*
*Ձյուն է իջել նաև*
*Սարյակի բնին,*
*Ու թռչել է բույնը,*
*Ծառով կընկղմի:*
*Որոշել է Արմոն.*
*Հենց գարուն լինի,*
*Նա սարյակի համար*
*Նոր բույն կշինի:*

3

*Փոքրիկ մի տղա կա*
*Մեր փոքրիկ գյուղում,*
*Որ բոլորի նման*
*Դպրոց է գնում.*
*Ունի նա մատիտներ*
*Պայուսակում իր,*
*Դասագրքեր, տետրեր*
*Եվ մի օրագիր.*
*Օրագրում նրա*
*«Հինգեր» կան շաղլիկ,*
*«Չորսեր» կան այնքան,*
*«Երեքներ» կաղլիկ:*
*Եվ թաքցնելու էլ*
*Ոչ մի հարկ չկա.*
*Օրագրում երկու*
*«Երկուսներ» էլ կան:*
*Բայց Արմոն խելոք է,*
*Խոսք է տվել նա.*
*Մինչև գարուն «երկուս»*
*Էլ չի ունենա:*

# ՓՈՂՈՑՈՒՄ

ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. ԳՐ. ԽԱՆՋՅԱՆԻ

Անձրև է։ Փողոցում միայն նա է՝ նիհար, բարձրահասակ. նա այնքան է թեքվել առաջ, կարծես ձեռնափայտն է, որ պահում է նրան չընկնելու համար։ Ձախ ոտքն էլ ծնկից չի ծալվում. աջը առաջ դնելով, ձախ ոտքը գերանդու պես ուղիղ կտրում է օդը և խուլ թխկոցով հանգչում մայթի վրա։

— Թը՛խկ, ամեն անգամ լսվում է, երբ նա ձեռնափայտը հենում է մայթին, — Թը՛խկ, — համարյա կես րոպե հետո լսվում է երկրորդ անգամ և այսպես համաչափ ընդհատումներով, միայն չգիտես այդ թըխկոցը ոտքի՞, թե՞ ձեռնափայտի ձայնն է։

Մի երկու օր առաջ ի՜նչ արև էր, ի՜նչ եղանակ. իսկ հիմա կարծես նույն կապույտ երկինքը չլինի՝ մթնել է, ցածրացել, ու տեղում է անձրևը աշնանային միապաղաղությամբ, մինչդեռ ամառ է, կանաչ Երևանն օդակող անտառն ավելի է բարձրացել, թանձրացել տերևախիտ ճյուղերից։ Ասենք, երբ նա դուրս եկավ տնից, այնքան էլ վատ չէր եղանակը. բայց այնքան դանդաղ է շարժվում, մինչև տեղ հասնի, եղանակը կարող է տասն անգամ փոխվել։

Անձրևը փարարեց։ Ծեր կինը մի րոպե կառչեց ձեռնափայտից, ուղղվեց, նայեց վեր՝ երկնքին և անձրևի սառը կաթիլներից փակելով աչքերը, խոնարհվեց ձեռնափայտի վրա ու թխկացնելով մայթին, շտապեց առաջ, շտապեց...բայց այդ միայն հոգու մեջ, մտքում, թե չէ ոտքերն էլի նույնն էին։ Նրան կաշկանդում էր և թրջված շորը. ձեռքի թաշկինակն էլ, որով նա հաճախակի սրբում էր երեսը, ջուր էր դառել։

Ծեր կինը մոտեցավ մի բազմահարկ շենքի, կանգնեց մայթի վրա կախված պատշգամբի տակ և մեջքով հենվեց պատին։ Շորը կարող է ցեխոտվել, բայց ոչինչ, գոնե մեջքը կհանգստանա։ Նա նորից նայեց վեր. ուզում էր ստուգել՝ իսկապե՞ս պատշգամբն իրեն պաշտպանում է անձրևից։ Պաշտպանում է։ Ձեռնափայտը հենեց պատին։ Երկու ձեռքով՝ քամեց թաշկինակը, թափ տվեց, անզգույշ էր. քիչ մնաց ձեռնափայտը ընկներ. կռանալ, վերցնելն այնքան էլ հեշտ չէր լինի նրա համար։ Ականջներում աղմուկը մեղմացավ։ Կարծես անձրևը դադարում էր։ Նրա ուշադրությունը գրավեցին արագ վերուվար անող ավտոները։ Ինքնաբերաբար ինքն էլ շարժվեց։ Այս ի՞նչ է. փողոցով հոսող ջրերը փարարեցին։ Ո՞վ իմանա, երևի «վերևները» հորդառատ անձրև է։ Ծեր կինը մտահոգված կանգ առավ մայթի եզրին. պետք է անցնել մյուս մայթը. կլինի՞ որ. ջուրը համարյա գետի պես է հոսում։ Գուցե ներքևում անցնելու տեղ լինի։ Չէ՛, բարակ տեղ չկա։ Մոտիկից, շատ մոտիկից անցավ մի ավտոմեքենա և անձրևաջուրը ցայտեցնելով կնոջ վրա, սլացավ առաջ։ Սա ի՞նչ բան է. կարծես հենց դրա համար է դուրս եկել շրջագայության, որ մարդկանց ջրով տա...Երևի շտապում է, բան չկա, ջուր է, է՜լի...

Երիտասարդ մի կին, կապույտ անձրևանոցով, արագ մոտեցավ. գուցե ուզում էր օգնել իրեն։ Պառավը մեջքն ուղղեց։ Իսկ երիտասարդ կինը



թեթև ցատկումով թռավ առուն և արագաքայլ հեռացավ. «Զահել է, ժամանակ չունի»,— մտածեց պառավը. ոչի՜նչ, ահա մի ավտո է մոտենում. կարելի է ձեռնափայտը բարձրացնել, խնդրել, որ մայթից մայթ տեղափոխի իրեն. միայն մի վայրկյան. դժվար բան չէ։ Ծեր կինը ձեռնափայտը բարձրացրեց։ Վարորդին թվաց, թե նա զգուշացնում է իրեն, որ ջուր չթափի վրան և հեռու քշեց մեքենան։

— Չնկատեց,— ներող ժպիտը դեմքին շշնջաց պառավը և շարունակեց կանգնած մնալ։ Դարձյալ ավտոներ են գալիս։ Սա ապրանքատար է, խանգարել չի կարելի։ Կողքից մի կապույտ «Պոբեդա» է անցնում. չէ, չարժե ձեռնափայտը բարձրացնել. լավ կլիներ, ինչ լավ կլիներ, որ իրենք տեսնեին. մոտենայի՛ն՝ մայրիկ,— ասեին,— որտե՞ղ ես գնում, նստիր խնդրեմ...

Մի մարդ էր մոտենում։

— Էսպես էլ բա՜ն,— ուշադրություն գրավելու համար խոսեց ծեր կինը.— չեմ կարողանում մայթից փողոցն անցնել...ա՜յ, ոտքս էնտեղ դնեմ, պրծավ...

Տղամարդը մի վայրկյան կանգնեց, նայեց ծեր կնոջը, նայեց պղտոր ջրերին...

— Մի տաս րոպեից ջուրը չի լինի, կհանդարտվի... սպասիր...,— ասաց։

Կինը մռայլվեց։

— Կհանդարտվի՞ որ...

— Իհարկե... Պատշգամբի տակ կանգնիր, չթրջվես։

— Շնորհակալ եմ։

Տղամարդը հեռացավ, բայց հանկարծ վերադառնալով կանգնեց ծեր կնոջ դիմաց։

— Գուցե օգնե՞մ,— հարցրեց նա,— միտքս զբաղված էր, ներեցեք...

— Չէ՛, չէ՛, պետք չի,— իսկույն պատասխանեց կինը,— էսպես պիտի իջնեմ...

— Թե չէ, ուղղակի լավ չստացվեց,— ավելացրեց տղամարդն ու արագ հեռացավ։

«Պիտի սեփական ոտքով անցնել»,— վճռեց պառավը և ուզում էր նախ ձեռնափայտն իջեցնել մայթից փողոցը, երբ նորից անհամարձակությունը ետ մղեց նրան։ «Ավելի լավ է վերադառնամ. վաղը կգնամ, ափսոս, այսքան տեղ գալուց հետո...» ու մնաց նա մայթի եզրին։ Այդ ժամանակ էր ահա, որ դիմացի շենքի բաց մուտքից դուրս թռան մի խումբ երեխաներ. Նրանք զվարթ ճռվողյունով մտան ջրերի մեջ. ոտաբոբիկ էին... Պառավը նկատեց. հիմարներ, կմրսեն, գուցե ապակու կտորներ, մեխ...

— Է՜յ, կորեք տուն,— որքան ուժ ուներ բղավեց նա։

Երեխաները մեկից կանգնեցին։ Այդ ինչպե՞ս է կանգնած՝ կամրջի պես կոր, հենված ձեռնափայտին։ Երեխաները մոտեցան։

— Տատի,— ասաց սևաչյա մի չարաճճի,— երևի ուզում ես փողոցն անցնել։

Տատին զարմացած նայեց.

— Ինչի՞ց իմացար։

— Մենք գիտենք,— չիմանալով ինչ պատասխանել, ասաց տղան և ամբողջ խումբը հռհռաց։

— Տատի,— առաջ տարավ սևաչյան,— դուք սպասեք էստեղ...

Եվ խմբի հետ արագ վազեց դեպի հանդիպակաց շենքի մուտքը. այդտեղ իրար ետևից թռան ներս և անհետացան պառավի զարմացած աչքերի առաջ։

— Ձեռ են առնում,— քրթմնջաց նա, և այն է, ուզում էր ետ դառնալ, երբ խումբը նորից երևաց զինված կարմիր աղյուսներով ու մի երկար տախտակով։



— Ո՞ւր եք տանում, ո՞ւր եք տանում,— նրանց ետևից փողոց դուրս գալով գոռում էր մի ծերուկ։

Ուշք չդարձնելով ոչ զարմացած պառավին և ոչ էլ սպառնացող ծերուկին, երեխաներն սկսեցին մայթից աղյուսը զույգ-զույգ շարել մինչև փողոցի մեջտեղը, որտեղ արդեն ջուր չկար։ Տախտակն էլ դնելով աղյուսների վրա, մի կողմ կանգնեցին.

— Պատրաստ է, տատի, անցեք...

— Սպասիր,— մոտենալով հրամայեց ծերունին,— ա՛յ թե կանցկացնեք հա՜, չեն էլ ասում ինչի համար է, մի գլուխ վերցնում են ու, պո՜ւկ...

— Քեռի, սպասում է, է՜,— վրդովվեցին երեխաները։

— Իսկ ինչպե՞ս եք դրել տախտակը... ահագին դուրս է մնում, ոտքը դրեց, տախտակի մյուս ծայրը բարձրանալու է, և ձեր տատիկը լողալու է ջրի մեջ...

— Վա՜յ,— գրեթե միաբերան բացագանչեցին երեխաներն ու աղյուսները տախտակի միջնատակից հանելով դրին ծայրամասում։

Տատին թեթևացած սրտով հոգոց հանեց, ու երբ աչքերը պարզեցին արցունքներից, սկսեց քայլել տախտակի վրայով։ Փողոցի վերևից ու ներքևից եկող ավտոները կանգնեցին։ Անցորդները հետաքրքրությամբ նայում էին երեխաներով շրջապատված ծեր կնոջը և քաջալերանքի խոսքեր էին ասում։ Ամեն մեկն աշխատում էր մի որևէ բանով օգնել նրան։

Հասնելով փողոցի մեջտեղը, տատին կանգնեց։ Երեխաները ազատ մնացած աղյուսները բերում, նորից էին շարում և տախտակը քաշում առաջ՝ կենտրոնից մայթը։

«Դե, իհարկե, պիտի օգնեին, ես գիտեի, որ պիտի օգնեին»,— մտածում էր պառավը։

Երեխաներն արդեն ուզում էին հավաքել իրենց «փոխադրական միջոցները», բայց տատը կանգնեցրեց նրանց։

— Անունդ,— հարցրեց նա մոտիկ կանգնած սևաչյային։

— Իմը՝ Գարիկ, սրանը՝ Հակոբ, նրանը՝ Վահիկ, էս մրսկանն էլ Կարլոսն է։

— Ի՞նչ։

— Կարլոս։

— Թոռանս անունն է,— ուրախացավ տատը։

— Ո՞րտեղ է նա,— հարցրեց Վահիկը։

— Ծննդյան օրն էր երեկ, պիտի գար ինձ տեսնելու, ամեն տարի գալիս էր... Չեկավ... Ես կգնամ... ահա գնում եմ...

— Թող ինքը գա,— զայրացավ Գարիկը։

— Չեկավ, երևի հիվանդ է, մի բան է պատահել,— հառաչեց տատին և ձեռքը սև շալի տակ տարավ.— վերցրեք,— ասաց նա երեխաներին մեկնելով «ծիծեռնակ» շոկոլադե կոնֆետներ։ Այդ երևի Թոռան համար էր դրել գրպանը։

— Մենք շատ ունենք,— հրաժարվեց Հակոբը աչքերը փայլեցնելով։

— Թող լինի... վերցրե՛ք։

Երեխաները հնազանդվեցին։

— Կերեք...

Նրանք իրար նայելով սկսեցին կոնֆետը բաց անել։ Տատին հեռացավ, որ անհարմար չզգան։

Բայց նա դեռ մի քանի քայլ էլ չէր արել, երբ նրան մի մարդատար ավտոմեքենա մոտեցավ։

— Նստիր, մայրի՛կ,— ձայն տվեց վարորդը դուռը բացելով։

Երեխաներն աղմուկով մոտեցան պառավին և թևերից բռնելով նստեցրին մեքենա։

— Ո՞րտեղ պիտի տանել ձեր տատիկին,— հարցրեց վարորդը ժպտալով։

Երեխաները իրար երես նայեցին։ Իսկապես ո՞րտեղ։

— Ուղի՛ղ, ուղի՛ղ գնա,— ասաց պառավը, տեղավորվելով մեքենայի մեջ։ Մեքենան շարժվեց։

Երկինքը պարզել էր։ Անձրևաթաց փողոցի վրա արդեն փայլում էր արևը։ Ասենք տատիկի սրտում էլ ոչ մի կտոր ամպ չէր մնացել արդեն։





# ՀՄԱՅԱՆՔ

Վ. ԱՆԱՆՅԱՆ

Նկ. Ռ. ՀՈՎԻՎՅԱՆԻ

Գառնիից ոչ հեռու որս էինք անում: Կրակոցներից սարսափահար կաքավները թափվեցին Ազատ գետի ձորը և ապաստանեցին ժայռերին՝ էլ որս չմնաց: Ոչինչ, այսպես էլ լավ է. նստել եմ ժայռի գլխին ու ներքևում դեղնող թփերին եմ նայում:

Բայց այս ինչի՞ վրա է այսքան շատ կրակում իմ ընկեր Խաչիկը: Ահա կուզեկուզ վազում է աշնան նորածիլ արտում, գետնից վերցնում է խփած որսը, նորից կրակում, նորից վազում: Ո՞ւմ վրա է կրակում, ախր կաքավները լեղապատառ ձորը թափվեցին:

Հետաքրքրությունից մղված բարձրացա դեպի շեկ ժայռերի գլխին փռված արտը: Տեղ հասա ու զարմանքից կանգ առա. դժվար էր հաշվել, թե քանի կաքավ կար ընկերոջս գոտում կախված: Որտեղի՞ց այսքան որս: Իսկ նա ամբողջովին փայլում է երջանկությունից:

— Հրաշք բան է,—գոչեց նա,—կրակում եմ—փախցնում, էլի քիչ հետո գալիս են էս արտը...

Հրաշք չի, բայց հանելուկ է: Իրոք, ոչ մի կենդանի չի վերադառնում կրակոցի վայրը, այն վայրը, ուր թողել է իր ընկերոջը հոգեվարքի մեջ...

— Էս ժայռի հետևն անցնենք, հիմի էլի կգան...

Ես լուռ ենթարկվեցի: Նստած էինք ժայռի ստվերում, ես՝ մտախոհ, նա՝ աշեկոծ ու անհամբեր: Կաքավները մեզ երկար սպասեցնել չտվին, շուտով թևերի շափշափյուն լսվեց և մեր թաքստոցից տեսանք, թե ինչպես խումբը իջավ արտի ծայրին, մասրենու թփի մոտ:

— Միշտ էնտեղ են իջնում, էն թփի մոտ: Ի՞նչ բան է, հո մեջը թալիսման չկա՞...

— Ինչի մեջ:



— Թփի...

Լուռ ծխաղում ենք երկուսս էլ, ապա հրացանները պատրաստելով, վեր ենք կենում ու քայլում դեպի կաքավները:

Ընկերս կրակեց ու վազեց իր հերթական զոհի հետևից, իսկ ես լուռ շրջում եմ մասրենու շուրջը, ցորենի կանաչ ծիլերն եմ պոկում և ուշադիր նայում, հոտոտում. ի՞նչ ուժ կա այս կանաչի մեջ, որ դեպի իրեն է քաշում կաքավներին, ախր սրա նման արտեր շատ կան Գառնու շրջակայքում, ինչո՞ւ են կաքավները ցենտրոնանում հատկապես այստեղ:

Միտքս զբաղված էր այդ հարցով, երբ հայացքս կանգ առավ մի կարմիր բանի վրա. մասրենու տակ մի լաթի կտոր կար ընկած: Ով գիտի, երբ են պիոներները մասուր հավաքել այստեղ, ու նրանցից մեկն իր փողկապը մոռացել է թփուտների մեջ:

Արևն ամպի կտորի տակ էր, երբ նայեցի այդ հին, խունացած ծվենին: Բայց երբ հետո իր պայծառ դեմքը դուրս հանեց ամպի տակից և նրա պռնկով իր ճառագայթների շեկ խուրձերը ուղղեց փողկապին, խունացած կտորը շողաց լեռնային կարմիր կակաչի նման: Այդ պահին նա նման էր և մայիսյան վառ կարմիր վարդի, որ համեստությունից թաքնվել էր թփի տակ:

Միակ կարմիրը շրջապատի աշնանային գորշության մեջ...

Ահա ինչն էր գրավում ժայռերի քնքույշ երգիչներին:






## ՋՈՒՐ ՇՊՐՏՈՂ ՁՈՒԿԸ



Այս ձուկը ապրում է Տաիլանդի գետերում: Ամբողջ օրը լողում է ջրի երեսին, տեսողությունն էլ այնքան սուր է, որ շատ հեռվից տեսնում է օդում իր որսը: Նա սիրում է և ջրափերը: Հենց որ մի միջատ նստում է խոտի կամ ծաղկի վրա, այդ 10–12 սանտիմետր երկարություն ունեցող ձուկը գլուխը հանում է ջրից և բերանում պահած ջուրը 4 մետր շպրտելով սպանում է իր որսին: Ճշտեր են տեսել, երբ ավազանի շուրջը հավաքված մարդկանց երեսին է շպրտել ջուրը: Եվ այնքան դիպուկ է շպրտում, որ մի անգամ նա մարել է մեկի ծխախոտը:

## ԹՈՒՆԱՎՈՐ ԾԱՌ



Պանամայի ջրանցքի ափերին աճում են 3–15 մետրանոց ծառեր, որոնց բուսաբանները կոչում են «Դիպլոմանտ Մանիցելլուն»: Նման ծառեր կան և ուրիշ տեղերում: Նրա պտուղները, ընդ և տերևների հյութը անչափ թունավոր են: Վտանգավոր է մոտենալ այդ ծառին, երբ չունես ոտքին հագուստ, դիմակ և ձեռնոցներ: Առանձնապես վտանգավոր է անձրևի ժամանակ, որովհետև անձրևի կաթիլները հոսելով նրա տերևներով, իրենց մեջ են լուծում այդ թույնը և բավական է, որ ընկնի մարմնի բաց մասի վրա, անմիջապես ուռուցք է առաջանում, իսկ երբ ընկնի աչքի մեջ՝ կուրացնում է: Բայց այդ ծառի փայտը շատ արժեքավոր է: Կտրելու համար նախօրոք կրակ են անում շուրջը, չորացնում ծառը և ապա օգտագործում: Եթե փայտի թույնը լավ չի չորացել, ապա անզգուշության դեպքում բաց թեփը մեծ վնասներ կառաջացնի:

## ՍՊԻՏԱԿ ՄՐՋՅՈՒՆՆԵՐԻ ԱՐՇԱՎԱՆՔԸ



Չորս տարի առաջ, Գերմանիայի Համբուրգ քաղաքի ծայրամասը եռուզեռի մեջ էր: Ոստիկանների խիստ հսկողությամբ մարդիկ քանդում էին ավերակ շենքերի մնացորդները: Այդ շենքերը ոչ փոթորիկից էին կործանվել և ոչ էլ երկրաշարժից, այլ սպիտակ մրջյուններից, որոնց տերմիտներ են անվանում: Տաք երկրների այդ ոչ մեծ միջատները մարդկությանը հսկայական վնասներ են հասցնում: Նրանք ոչնչացնում են բանջարանոցները, պահեստները, կրծում են կահույքը, հագուստը: Հատկապես մեծ վնաս են հասցնում փայտյա շենքերին: Տերմիտները շատ կարճ ժամանակում ավերակ են դարձրել Սուրբ Հեղինե կղզու Ջեյմսթաուն մեծ քաղաքը: Համբուրգի Կենդանաբանական ինստիտուտի գիտնականների կարծիքով, տերմիտները իրենց քաղաքն են թափանցել Ամերիկայի Միացյալ Նահանգներից, երբ նավերով փայտե գերաններ էին տեղափոխում Գերմանիայի արևմտյան հատվածը:

## ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ԹՌՉՈՒՆ



Կենտրոնական Ամերիկայի անտառներում ապրում է կետցալ անունով հազվագյուտ մի թռչուն: Իր գեղեցկությամբ, փետուրների պայծառությամբ նա մրցում է հեքիաթային թռչունների հետ: Նա աղավնու չափ է, մեջքը և թևերը զմրուխտի պես կանաչ՝ կապույտ փայլատակումով: Կուրծքը վառ կարմիր է, ոտները ու կտուցը՝ դեղին: Գլուխը զարդարված է մետաքսյա փնջով: Բայց ամենից հետաքրքիր մեկ մետրի հասնող նրա գեղեցիկ պոչն է: Հին հնդիկները, Մեքսիկայի և Գվատեմալայի բնակիչները նրան համարում են սուրբ թռչուն: Հնդիկները հավատում էին, որ կետցալը չի կարող ապրել փակ վանդակում և ազատության կարոտից նա մեռնում է: Ահա թե ինչու հնդկական դրոշների և գերբերի

վրա դրոշմած է նրա նկարը՝ որպես ազատության խորհրդանիշ: Գվատեմալայում նրա անունով դրամական միավոր գոյություն ունի, իսկ կառավարության որոշմամբ արգելված է կեցալի որսը:

## ԴԵՂԻՆ ՎԱՌԱՐԱՆԱԳՈՐԾ



Բոլիվիայի անտառներում աճող շշաձև, սեյբա կոչվող ծառի վրա ապրում է մոխրագույն կրծքով, վառ դեղնագույն գլխով մի թռչուն: Նա իր բույնը շինում է խոնավ կավահողից ու խոտերից, որը նման է վառարանի: 20 սանտիմետր բարձրությամբ բույնը ունի իր ելքը, իսկ մուտքի մոտ լուսանցքից պատ է շինում, որ խանգարում է օձերին ներս մտնել:

## ՌԱԴԻՈԱՊԱՐԱՏ ՈՒՆԵՑՈՂ ՓԻՂԸ



Փղի դունչ ու կնճիթ ունեցող մետրանոց այս ձուկը, որին անվանում են նաև մորմիրուս, ապրում է Կենտրոնական Աֆրիկայի լճերում ու գետերում: Մորմիրուսը իր ամբողջ կյանքը անց է կացնում ջրի հատակում՝ սնունդ որոնելով տիղմի մեջ: Գիշատիչ կենդանիները չեն կարողանում այդ ձկներ որսալ, որովհետև նրանց պոչի կողմում կա մի մասնիկ, որը մեկ րոպեում շրջապատին հաղորդում է 80—100 էլեկտրամագնիսական տատանումներ, իսկ վզի մասում կա մի «ապարատ», որն ընդունում է այդ տատանումները իբրև ազդանշան՝ վտանգից խուսափելու համար:



Դ. ՍԱՐԳՍՅԱՆ

Մի օր Խելքն ու Բախտը վեճի են բռնվում: Ամեն մեկը պնդում է, թե ինքը մարդու համար ավելի է կարևոր: Խելքը թե՝ որ ես չլինեմ, մարդը մարդ չի լինի, ես եմ ղեկավարում նրան, ու որքան էլ մարդը բախտ ունենա, չի կարող երջանիկ լինել առանց ինձ: Բախտը թե՝ մարդն առանց ինձ, ոչ մի հաջողության չի հասնի կյանքում:

Ու էդպես երկար-վիճելուց հետո, որոշում են փորձել... Գնում են, գնում ու հանդիպում մի աղքատ գյուղացու, որը լծել էր իր նիհար եզները և քրտինքի մեջ կորած վար էր անում:

— Դե հիմա դու տես, թե ինչ է կատարվելու այս գյուղացու հետ,— ասում է Բախտը ու գնում մտնում է գյուղացու մեջ: Հենց որ Բախտը մտնում է գյուղացու մեջ, արորը մի բանի է դեմ առնում: Գյուղացին որքան ծեծում է եզներին՝ բան դուրս չի գալիս. արորը առաջ չի գնում. նա թողնում է արորը, կռանում ու սկսում է քանդել հողը: Քանդում է, քանդում և ինչ է տեսնում. մի կճուճ, մեջը՝ լիքը դեղին ոսկի: Աչքերին չի հավատում, ձեռքերով խառնում է ոսկին, հանում, նորից զնգզնգով լցնում կճուճը ու երբ համոզվում է, որ դա իրողություն է, կճուճը հանում է հողից ու մտածում, թե ինչպես հասցնի տուն:

Այդ ժամանակ արտի մոտով թագավորը շքախմբով գնում էր որսի: Արևի տակ փայլփլում էին զենքերն ու ոսկեգույն ժապավենները. գյուղացին, որ սրանց տեսնում է, ահն ընկնում է սիրտը: «Օ՜, եթե թագավորն իմանա, ինձ անմիջապես կկախի: Ավելի լավ է, ինքս իմաց տամ ու իրեն հանձնեմ կճուճի ոսկին: Չէ՞ որ նա ինձ կվարձատրի դրա համար», մտածում է գյուղացին և իսկույն վազում դեպի թագավորը: Այդ միջոցին Խելքը, որ հետևում էր Բախտի գործողություններին, մոտենում է Բախտին ու խնդրում՝ փոխարինել նրան. Բախտը համաձայնվում է: Հենց որ Խելքը գլուխն է մտնում, մարդն սկսում է մտածել... «Ախր ինչո՞ւ պիտի իմ գտած հարստությունը թագավորին տամ, որից ոչ մի օգուտ չկա, բացի հարկ ու տուրքից»: Բայց արդեն ուշ էր. թագավորը գեղեցիկ ձիուն բազմած՝ դիմում է գյուղացուն, թե ինչ է խնդրում իրենից: Գյուղացին նախ խոնարհ գլուխ է տալիս, ապա համբուրում թագավորի փեշի ծայրը և ասում.

— Թագավորն ապրած կենա, մենք՝ քո խոնարհ ծառաներս, պապերից մնացած մի հին ավանդություն ունենք. որ եթե թագավորը անցնի նոր վարած արտի միջով, այդ արտը կրկնակի բերք կտա: Դրա համար էլ աղաչում եմ քո ձին քշես արտիս միջով: Խեղճ գյուղացի մարդ եմ, խնդիրս մի մերժիր...

Թագավորը նախ ծիծաղում է «հիմար» գյուղացու վրա, ապա չուզենալով նրան մերժել, կատարում է նրա խնդրանքը:

# ու Խելքը



Գյուղացին գոհ է իր արտերից, քաղ-քաղ ծիծաղում է: Ապա կճուճը դնում է խուրջինը, արձակում եզները և ուրախ-ուրախ տուն գալիս: Այստեղ Խելքը հարցնում է Բախտին, թե ո՞վ հաղթեց: Ինքնահավան Բախտը ցանկանում է զարմացնել Խելքին և մտնելով գյուղացու մեջ, գյուղի ծայրին նրան հանդիպեցնում է մի թամբած ձիու... Զարմացած գյուղացին մոտենում է եզներին, վազում նստում ձիուն, խուրջինը դնում առաջին ու շարունակում ճանապարհը, բայց երկու քայլ չարած ձգում է սանձն ու կանգնում: «Չէ՛ էսպես չի լինի, ի՞նչ կասեն տեսնողները: Չե՞ն ասի՝ էս աղքատ գյուղացուն որտեղի՞ց էս ձին ու էս ոսկիները: Անպայման կասեն՝ գողացել է ու, վա՛յ ինձ... Լավ չի՞ լինի, որ գնամ, ամեն ինչ պատմեմ թագավորին ու սպասեմ նրա ողորմության»: Մտածում է ու այդպես էլ անում: Ձին շուռ է տալիս դեպի դիմացի անտառը, որտեղ թագավորը որս էր անում:

Խելքը, որ կողքին հետևում էր գյուղացուն, բարկանում է Բախտի վրա ու փոխարինում նրան: Գյուղացին, որ արդեն անտառ էր մտնում, սթափվում է և մտածում, թե ինչ հիմար մարդ է եղել, որ ուզում էր գտած ոսկին տալ թագավորին: Երբ ուզում էր վերադառնալ, հանկարծ հանդիպում է թագավորին, որը դեպի իրեն էր գալիս: Գյուղացին ձին շտապ տանում է դեպի թփուտները և թաքցնում: Հետո խուրջինից հանում է կճուճը, սպիտակ սրբիչով ծածկում բերանն ու գրկած վազում դեպի թագավորը: Սա գյուղացուն տեսնելուն պես բարկացած կանգնեցնում է ձին: Գյուղացին ծունկի է գալիս ու ասում.



-Մեծ թագավոր, դու չմերժեցիր ծերունու խնդիրը և անցար իմ արտի միջով. նա կկանաչի ու առատ բերք կտա... Բայց չէ՞ որ կարող է երաշտ լինել: Հիմա աղաչում եմ, որ քո ջրամանից մի կաթիլ ջուր լցնես այս կճուճի վրա, որի մեջ լցրել եմ իմ արտի հողից, որպեսզի տարին անձրևային լինի ու արտս չչորանա:

Թագավորը, որ համբերությունը զսպած լսում էր, զարմանում է նրա սրամտության վրա և իրեն շոյված զգալով ասում.

-Լա՛վ, ծերուկ, թող քո ցանկությունը լինի, բաց կճուճի բերանը:

Այդ միջոցին Բախտը, որ հետևում էր Խելքին, սպասում է նրա պարտվելուն: Ահա թագավորը կռանում կճուճում լցված ոսկին և, վե՜րջ. ինքը հաղթանակեց: Բայց գյուղացին ոտքի կանգնելով դիմում է թագավորին.



Նկ. Ալ. Գրիգորյանի

Ո՞վ ամենազոր արքա, անձրևը թափվում է ամպերից, և այս սպիտակ ջուրն էլ թող ծառայի որպես անձրևաբեր ամպ... Լցրեք ձեր սրբազան ջուրը հենց այս ջրի վրա...

Թագավորը ժպտում է ու իր ոսկե քրամանից մի կաթիլ ջուր լցնում սրբիչի վրա ու հրամայում ծերունուն՝ այլևս իրեն չանհանգստացնել:

Ինքնագոհ և ուրախ գյուղացին կրկին վերադառնում է, նստում իր ձիուն ու բռնում գյուղի ճամփան: Խելքը դիմում է բախտին.

— Հը՛ բարեկամ, քեզ համարո՞ւմ ես պարտված:

— Օ՜, ոչ, դու երկու անգամ հաղթեցիր, բայց սպասիր, ես ուզում եմ մի անգամ էլ փորձել:

Բախտը կրկին մտնում է գյուղացու մեջ: Գյուղացին, որ շտապելուց բռնել էր գյուղի կարճ ճամփան, հանկարծ տեսնում է մի մեծ քարի տակ երեք զինված մարդ պպզած վիճում են: Նա խսկույն զգում է, որ սրանք ավազակներ են ու կարող են իրեն թալանել ու սպանել, լեզուն կապ է ընկնում: Ուզում է ձին շուռ տալ, որ փախչի: Բայց ձին էլ հակառակի պես ուժեղ խրխնջում ու ծառս է լինում: Ավազակները, որ չէին տեսել նրան, հանկարծակիի եկած շուռ են գալիս ու տեսնում:

— Թագավո՛ր, — սարսափած գոռում է գյուղացին,—սպասիր, ես զանձը քոնն է, քոնը:

Թագավորի անունը լսելուն պես՝ ավազակները խուճապի են մատնվում: Մինչև գյուղացին ուշքի եկավ, արդեն քարի տակ ոչ մի մարդ չկար, բացի մի գեղեցիկ ոսկյա սափորից ու երեք կույտ անգին քարերից: «Երևի ես թալանչիները սափորի համար էին վիճում»,—մտածում է գյուղացին, իջնում ձիուց, իր կճուճի ոսկիները դատարկում ոսկյա սափորի մեջ, անգին քարերը լցնում վրան, կճուճը նորից դնում խուրջինը, նստում ձին ու գալիս տուն:

Ամբողջ գիշերը գյուղացին ու իր կինը ուրախությունից չեն կարողանում քնել: Այդ ժամանակ Բախտն ասում է Խելքին.

— Հը՛, ինչպե՞ս է, ո՞վ է ավելի զորավոր:

— Հիմա, եղբայրս, եթե ուզենա մեր գյուղացին, կարող է թագավորի պես ապրել. միայն Խելք է նրան պետք:

— Է, էլի դու մեջ ես բերում քեզ: Ոչ մի Խելք էլ նրան պետք չէ... Բայց գյուղացին առավոտյան սկսում է մտածել, որ ավազակները իրեն ճանաչած կլինեն, ուրեմն թագավորը կիմանա ու, վա՜յ իրեն էլ, իր կնոջն էլ: Եվ որպեսզի վատ հետևանք չունենա, որոշում է ոսկիները տանել թագավորի մոտ ու ամեն ինչ պատմել նրան: Իր որոշումը հայտնում է կնոջը, և կինն սկսում է անիծել թագավորին էլ, ավազակներին էլ: Մարդը տեսնում է ճար չկա, ծեծում է կնոջը, սափորը դնում խուրջինի մեջ ու գնում ձիուն թամբելու: Իսկ կինը, կատաղած ամուսնու վրա, խուր-



ջինից հանում է սափորը, դատարկում ոսկիներն ու անգին քարերը, մեջը քար լցնում, բերանը պինդ կապում ու կրկին դնում տեղը: Մարդը, առանց բանից տեղյակ լինելու, վերցնում է խուրջինը, նստում ձին ու ճանապարհ ընկնում թագավորի մոտ: Էդ օրն էլ թագավորի պալատում մեծ տոն է լինում: Երբ թագավորին հայտնում են, որ մի գյուղացի նվեր է բերել, հրամայում է ներս թողնել: Գյուղացին հանում է սափորը ու հպարտ ներս մտնում:

Թագավորն իսկույն ճանաչում է գյուղացուն ու վրդովված սպասում, թե էլի ինչ հիմարություն պիտի դուրս տա: Բայց սա սափորը դնում է թագավորի առաջ:

Տեր արքա, բարեհաճեցեք ձեր սեփական ձեռքով բացելու այս սափորի բերանը և տեսեք, թե ինչ եմ բերել ձեզ նվեր:

Թագավորը ագահությամբ բացում է սափորի բերանը և ի՞նչ տեսնում. մեջը լիքը քար: Բարկությունից աչքերից կայծեր են թռչում, իսկ պալատականներից շատերը չեն զսպում իրենց և սկսում են ծիծաղել: Թագավորը մտածում է, որ դա մի վիրավորական խաղ է գյուղացու կողմից և հրամայում է բանտ գցել և մյուս օրը կախել նրան: Գյուղացին իսկույն գլխի է ընկնում, որ կնոջ սարքած բանն է: Բայց արդեն ուշ էր. նրան ծեծելով քարշ են տալիս բանտ:

Այստեղ Բախտը շփոթված դիմում է Խելքին.

Խելք, մարդուն պիտի ազատես. ո՞վ իմաստուն Խելք, եթե կարող ես, փրկիր նրա կյանքը, և ես ինձ պարտված կհամարեմ:

Խելքը ծիծաղում է Բախտի վրա ու մտնում մարդու մեջ: Հետևյալ օրը գյուղացուն տանում են կախելու: Մեռնելուց առաջ խնդրում է երկու խոսք ասել: Թագավորը չի մերժում:

Արքայից արքա, ձեր կամքին ես պարտավոր եմ ենթարկվել, բայց լսեք, թե ինչ է ասում ձեր ծառան: Այն սափորը, որ բերի, իրոք արքայավայել նվեր էր ձեր տոնախմբության օրվան... Այդ սափորը քո շքեղ թագավորության խորհրդանշանն է: Նրա մեջ եղած ամեն մի քարը քեզ պատկանող երկրներից եմ բերել ու մի տեղ հավաքել: Դրանով ես ցանկացել եմ քո երկրների միասնությունն ու համերաշխությունը: Քարեր եմ լցրել, որպեսզի քո տիրապետության տակ եղած երկրները ապառաժ քարերի նման ամուր լինեն, իսկ սափորի բերանի փակելն ես չհամարձակվեցի ձեռք տալ, որովհետև դա քո տիրակալ իրավունքն է քո ենթակաների վրա: Այդ բոլորով ես ցանկացել եմ քո մեծարումը: Ես աղքատ մարդ եմ, ուրիշ ի՞նչ կարող էի ընծա բերել, որ դրանից ավելի արժանի լիներ քեզ, տեր արքա: Իսկ հիմա ես պատրաստ եմ մեռնել հանուն քո թագավորության մեծարմանը...

Մի պահ քար լռություն է տիրում. բոլորը նայում են թագավորին:

Սնափառ թագավորը իրեն մեծարված ու շոյված զգալով, իր պալատականների առաջ ներում է գյուղացուն ու նվերներ տալիս:

Գյուղացին ուրախ-ուրախ վերադառնում է տուն, ծիծաղելով թագավորի միամտության վրա:

Գնա, ասում է Բախտը Խելքին, այսուհետև քեզ հետ չեմ վիճի, գնա ու մնա մարդու մեջ. քո տեղն այնտեղ է: Մարդն առանց քեզ չի կարող ապրել. դու նրա երջանկությունն ես: Ես ինձ պարտված եմ համարում:

Խելքը ժպտում է ու այդ օրվանից մտնում մարդու մեջ:

## ԹՎԱԲԱՆԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

Վ. ՀԱԿՈԲՅԱՆ

* * *

Մեր Արամը Գեղամին
Չորս հատ տետր երբ տար,
Գեղամը վեց հատ տետրակ
Արամից շատ կունենար:
Իսկ Գեղամը Արամին
Չորս հատ տետր երբ տար,
Արամինը վեց անգամ
Գեղամից շատ կդառնար:
Քանի տետր ունեին
Ամեն մեկը առանձին:

* * *

Մարոն վերցրեց փոքրիկ գումար,
Որ ներկ գնի իրեն համար:
Երբ երեք տուփ գնի նա՝
Մեկ ռուբլի կավելանա,
Իսկ թե գնի մեկով ավել՝
Մեկ ռուբլի կպակասի:
Որքան դրամ Մարոն ունի,
Պատասխանը ով շուտ կասի:

# Շախմատային կոնկուրսի արդյունքները

*Մեր ամսագրի 1956 թվականի 6-րդ և 7-րդ համարներում առաջարկված խնդիրների և էտյուդների պատասխաններն են.*

*Խնդիր № 1.*

*Սպիտակներ.*— Աh1, Թd6, Նe8, Փf5 զh3 (5)
*Սևեր.*— Աf3, Ձg2 (2)

*Մատ երկու քայլից*

1. Թh2

*Խնդիր № 2.*

*Սպիտակներ.*— Աd6, Ձb4, Ձf4 (3)
*Սևեր.* Աd1, Փa1, Ձg1, զ. զ. b2 c2, d2, e2, f2, (8)

*Մատ երեք քայլից*

1. Ձfd5! b1թ. 2. Ձe3+
1. . . . f1թ. 2. Ձc3+
1. . . . Աc1 2. Ձd3+
1. . . . Աe1 2. Ձd3+
1. . . . Ձf3 2. Ձd3

*Չի լուծում 1. Ձbd5? հետևյալ պատասխանի պատճառով՝ 1. . . c1Ձ!*

*Խնդիր № 3.*

*Սպիտակներ.*—Աb7, Փd5, e1, Ձd2, f2 (5)
*Սևեր.*— Աe3, զ. զ. d4, e2, e4, f4 (5)

*Մատ երեք քայլից*

1. Փe6 d4—d3 2. Ձg4+
1. . . . f4—f3 2. Ձc4+

*Խնդիր № 4.*

*Սպիտակներ.*—Աc5, Փd5, e1, Ձd2, f2 (5)
*Սևեր.*—Աe3, զ. զ. c4, d4, e2, e4, f4, g4 (7)

*Մատ երեք քայլից*

1. Աd6 *սպառնալով* 2. Աe5
1. . . . c3 2. Ձ:g4+
1. . . . g3 2. Ձ:c4+

*Էտյուդ № 1.*

*Սպիտակներ.*—Աg7, Փh5, զ. d6 (3)
*Սևեր.*—Աb2, Նe4, Փc6 (3)

*Ոչ ոքի*

1. Փf3 Նc4 2. Փd5! Փ: d5 3. d7 Նc7 4. Աh8! Ն: d7 *պատ:*

*Էտյուդ № 2.*

*Սպիտակներ.*— Աg2, Փa2, զ. զ. b5, h2 (4)
*Սևեր.*— Աh5, Փc2, զ. զ. d5, h6 (4)

*Շահում*

1. b6 Փe4+ 2. Աg3 d4
3. h4 Աg6 4. Փb1! d3
5. Փ: d3! Փ: d3 6. b7 *և սպիտակները շահում են:*

*Խնդիր № 5.*

*Սպիտակներ.*— Աd5, Թa4, Նf2 (3)
*Սևեր.*— Աd3, Ձg5, զ. զ. c3, d2 (4)

*Մատ երկու քայլից:*

1. Թd1!

*Խնդիր № 6.*

*Սպիտակներ.*—Աc4, զ. զ. e7, f6 (3)
*Սևեր.*—Աe6 (1)

*Սպիտակները ետ են վերցնում իրենց կատարած վերջին քայլը և մեկ քայլից մատ են անում:*

*Սևերի վերջին քայլն էր՝* 1. . . . f7—f5

*Սպիտակները սխալմամբ խաղացին՝* 2. e5 : f6

*Այդ քայլի փոխարեն սպիտակները կարող էին մեկ քայլով խաղը շահել, եթե խաղային՝* e8թ×.

*Խնդիր № 7.*

*Սպիտակներ.*— Աc5, Թf6, Ձa3, f5 (4)
*Սևեր.*— Աc1, զa5 (2)

*Մատ երեք քայլից*

1. Ձg3! Աd2 2. Թd4+
1. . . . a4 2. Ձe4:

*Խնդիր № 8.*

*Սպիտակներ.*— Աc5, Թf6, Ձa3, f5, զ. զ. b2, e4 (6)
*Սևեր.*— Աc1, զa5 (2)

*Մատ երեք քայլից*

1. Ձd6! Աd2 2. Թf1
1. . . . a4 2. Ձc4

*Էտյուդ № 3.*

*Սպիտակներ.*—Աb7, զ. զ. e2, f2 (3)
*Սևեր.*— Աa5, զ. զ. e4, f4, f5 (4)

*Ոչ ոքի.*

1. Աc6 Աb4 2. Աd5 Աc3
3. Աe5 e3 4. Ա: f4! ef
5. Աe3 f1Թ *պատ:*

*Էտյուդ № 4*

*Սպիտակներ.*— Աg1, Փe8, Ձg7, զ. զ. g6, h4 (5)
*Սևեր.*—Աh6, Նf6 (2)

*Շահում.*

1. Ձh5! Ա : h5 2. g7+Աh6
3. g8Ն!

*և սպիտակները խաղը շահում են:*

2. . . . Նg6+ 3. Փ : g6+Աh6
4. g8Ձ+!

*և սպիտակները խաղը շահում են:*

*Կոնկուրսում առաջադրըված բոլոր խնդիրներին ու էտյուդներին ճիշտ պատաս-*

խանել է Լևոն Հակոբյանը (Երևան), որը 38 հնարավորից հավաքել է 38 միավոր:

Կոնկուրսի մնացած մասնակիցները 38 հնարավորից հավաքել են հետևյալ միավորները.

Լյովա Գևորգյանը (Ղափան) 15 միավոր, Հովսեփ Հակոբյանը (Երևան) 14 միավոր, Բագրատ Պողոսյանը (Ղուկասյանի շրջան) 10 միավոր և այլն:

Ժյուրին կոնկուրսի առաջին մրցանակը շնորհեց Լևոն Հակոբյանին:

# ՆՈՐ ՀԱՂԹԱՆԱԿ

Այս տարվա սեպտեմբեր ամսին Մոսկվայում տեղի ունեցավ շախմատի միջազգային հերթական տասներկուերորդ օլիմպիադան: Մրցումներին մասնակցում էին տարբեր երկրների երեսունչորս թիմեր: Այդ թիմերի միջև համաշխարհային առաջնություն գրավելու ամենաշատ տվյալներին ունեին Սովետական Միության, Հարավսլավիայի, Արգենտինայի և Հունգարիայի թիմերը, որոնք նախորդ մրցություններում գրավել էին առաջնակարգ տեղերը:

Սովետական Միության թիմը 1952 թվականին առաջին անգամ մասնակցեց տասներորդ օլիմպիադային (Հելսինկիում) և գրավեց առաջին տեղը, իսկ տասնմեկերորդ օլիմպիադայի ժամանակ (Ամստերդամ, 1954 թ.) սովետական շախմատիստները երկրորդ անգամ նվաճեցին աշխարհի թիմային առաջնությունը: Այդ պատճառով էլ տասներկուերորդ օլիմպիադայի ժամանակ հարց բարձրացավ, թե սովետական շախմատիստները կարո՞ղ են արդյոք երրորդ անգամ նվաճել օլիմպիադայի ոսկյա գավաթը, թե՞ ոչ:

Սովետական Միության հավաքական թիմը, որի մեջ մտնում էին գրոսմայստերներ Մ. Բոտվիննիկը, Վ. Սմիսլովը, Պ. Կերեսը, Դ. Բրոնշտեյնը և գրոսմայստերներ Մ. Տայմանովն ու Ե. Գելլերն էլ, որպես պահեստայիններ, այս անգամ էլ հաղթանակ տարավ և նվաճեց խաղի սպորտային ոսկյա գավաթը: Մասնակիցները պարգևատրվեցին ոսկե մեդալներով: Տասներկուերորդ օլիմպիադայում երկրորդ տեղը գրավեց Հարավսլավիայի, իսկ երրորդ տեղը՝ Հունգարիայի թիմը:

Ստորև տալիս ենք տասներկուերորդ օլիմպիադայի խաղերից երկու վերջավորություն:

Վերջավորություն № 1.

Բոտվիննիկ-Գլիգորիչ
(ՍՍՌՄ) (Հարավսլավիա)



Դրությունը սևերի 21-րդ քայլից հետո:

Այս դրությամբ Բոտվիննիկը արագ կերպով հասնում է հաղթանակի.

22. Ձe4—f6! Աc7—b6
եթե 22 . . Փ:g2, ապա
23. Ն=c8.
23. Փg2:c6 Ձd8:c6
24. Նh8—h7 Ձc6—d8
25. Թg7:g6 Աb6—a6
26. a2—a4! Աa6—a5
27. Թg6—g5 Աa5:a4
28. Նh7—h1 Աa4—b3

Սևերի արքան գնում է հեռու:

29. Թg5—h4 Աb3—b2
30. g3—g4 սևերը հանձնվում են:

Վերջավորություն № 2.

Բարդա—Կելլեր
(Նորվեգիա) (Շվեյցարիա)



Դրությունը սպիտակների 25-րդ քայլից հետո:

Օգտվելով սպիտակ արքայի անհաջող դրությունից, սևերը կատարում են շրջանցում

25 . . . Նf8:f4!
26. g3:f4 Փg4—f5

Սպիտակների դրությունը արդեն վճռված է:

Սևերը սպառնում են հաղթել, ինչպես.....

27. . . . Թg4 + այդպես և
27. . . . Փe4

27. Թb7—d5 Թh5—g4+
28. Աg2—f1 Թg4—h3+!

և հաջորդ քայլին՝ մատ:

Հ. ԳԱՍՊԱՐՅԱՆ
(Շախմատի միջազգային վարպետ)

## ԽՈՍՈՒՄ Է ՄՈՍԿՎԱՆ

Մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվան սիրտն է նաև մեր ռադիոհաղորդումների։ Շատ ու շատ հեռուներում, ամենուրեք լսվում է Մոսկվայի ձայնը։ Այս րոպեին, երբ միլիոններ են լսում այդ ձայնը, Մոսկվան ասում է իր Նոր տարվա խոսքը։

Այդ խոսքը տրված է ծածկագրերով, որի «տեքստը» ռադիոալիքներն են, իսկ «բանալին»՝ նկարի ներքևում տեղավորված տառերը։

Մտածեցեք, թե ինչպես կարդալ մեր ծածկագիրը։




*Առաջարկ Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ*

## ԳԾԵՐԻ ՕԳՆՈՒԹՅԱՄԲ

Յուրաքանչյուր ֆիգուրան փորձեք բաժանել հինգ հավասար և միանման մասերի։



*Առաջարկ՝ Գ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*



„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса № 21.

Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06, 2—53—37

ՎՖ 07583, Պատվեր 1393, Տիրաժ 5000։ Տպագրական 4,5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 11/XII 1956 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։

Գինը 2 ռ.






## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ
Չորրորդ էջը՝
Նկ. Հ. ՂԱԶԱՐՅԱՆԻ

## ՆՈՐ ՏԱՐՎԱ ԿԱՌՆԱՎԱԼԻ ՀԱՄԱՐ

### ԴԻՄԱԿՆԵՐ

Վերցրեք հաստ թղթի մի մեծ թերթ, մեջտեղից ծալեք երկտակ և մի մասի վրա քառակուսիներ գծեք. յուրաքանչյուր կողմը պետք է լինի երկու սանտիմետր: Քառակուսիների բաժանված թղթի վրա տեղադրեք նապաստակի կամ կատվի նկար: Բավական է արտանկարեք դիմակի կեսը, քանի որ թուղթը երկտակ է արված: Պատրաստի ձևվածքը ներկեք, աչքի համար անցք բացեք և կեսագծերով ծալելուց հետո՝ սոսնձեցեք: Որպեսզի ականջները կանգնած մնան, ուղղեք ծալքերը: Դիմակի ներսում, աչքերից 3—4 սանտիմետր հեռու ամրացրեք երկու բարակ ժապավեն, որպեսզի դիմակը կապեք գլխին:



### ՕՁԻՔՆԵՐ

Կառնավալային զգեստների համար (ծաղրածուի, կոշկավոր կատվի և այլն) անհրաժեշտ են շքեղ օձիքներ: Դրանք կարելի է պատրաստել գունավոր կամ սպիտակ թղթից, որոնց վրա նախ պետք է երփներանգ նախշեր նկարել:

Վերցրեք այդպիսի մի քառակուսի թուղթ և երեսի կողմի վրա ծալեք այնպես, ինչպես ցույց է տրված № 1 նկարում: Հետո կտրեք անկյունը (Նկ. № 2), ապա ցանկացած ձևով կտրատեք եզրերը և թուղթը բաց արեք. օձիքը պատրաստ է (Նկ. 3 և 4): Որպեսզի կարողանաք այն հագցնել ձեր վզին, մկրատով կտրեք մի ծալվածքի ուղղությամբ և հագցնելուց հետո մի ծալքը մյուսի վրա դրեք ու ամրացրեք քորոցով:








*Լ. ԲԱՐՆԱԿՅԱՆ* *Նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ*



Դասարան մտավ միջահասակ, լիքը, կլոր դեմքով մի տղա: Առանց ընկերներին բարևելու նա գրքերի պայուսակը դրեց առաջին նստարանի տակ, ապա հայացքը պատի կողմը դարձնելով գոռաց.

— Այդ ո՞վ է իմ վերարկուի կեռից կախել...

Մի քանիսը շրջվեցին նրա կողմը, բայց ոչ ոք ձայն չհանեց:

Նա մոտեցավ, կախիչի վրայից իջեցրեց կիսամաշ վերարկուն և շպրտեց սեղանների վրա, ապա հանեց իր նոր վերարկուն ու կախեց նրա տեղը:

Հնչեց զանգի ձայնը:

Միջանցքում խմբված աշակերտները աղմուկով դասարան լցվեցին:

Վերարկուն կախող տղան, որի անունը Տիրան էր, հրամայաբար ասաց.

— Բոլորդ նստեք ձեր տեղերը, դե շո՛ւտ, ի՞նչ եք կանգնել, հիմա ուսուցիչը կգա...

Դասարան մտնելիս Կորյունը նկատեց պատից կախված նոր վերարկուն և ամեն ինչ հասկացավ: Մի պահ մտածելուց հետո, նա սեղանի վրայից վերցրեց իր վերարկուն, որի փեշերը հասել էին գետին և ասաց.

— Այս ո՞վ է վերարկուս գետին գցել:

— Ե՛ս,— դեմքը խոժոռելով առաջ եկավ Տիրանը,— շուտ վերցրու ու տեղդ նստիր:

Կորյունը վերցրեց վերարկուն ու մոտեցավ կախիչին: Տիրանը ձեռքը դրեց կախիչի վրա:

— Ուրիշ տեղ կախիր, սա իմ տեղն է...

— Տեսնում ես, որ ազատ տեղ չկա, ո՞ւր կախեմ,— ձայնը բարձրացրեց Կորյունը:

Ներս մտավ մաթեմատիկայի դասատուն: Տիրանն ու Կորյունը դեռ վիճում էին:

— Ինչո՞ւ եք մեխվել այդտեղ, նստեցեք,— ասաց նա և իսկույն նկատեց, որ Տիրանը Կորյունին թույլ չի տալիս վերարկուն կախել: Նա մատյանը դրեց ամբիոնին, հայացքը գցելով պատից կախված փոքրիկ կախիչին, ասաց.

— Արհեստանոցում զիգի-բիգի բաներ եք պատրաստում, ի՛նչ դժվար գործ է մի քանի գեղեցիկ կախիչներ պատրաստելը, ես դասարան եմ մտել,— դառնալով Տիրանին ասաց նա,— իսկ դուք վիճում եք վերարկու կախելու համար... Տիրան, դժվա՞ր է հասկանալ, որ երբ կախիչները քիչ են, պետք է միասին կախել:

— Ոչ միայն դժվար է հասկանում, չի էլ ուզում հասկանալ,— տեղից ասացին աշակերտները:

Դասն սկսվեց: Ամբողջ դասի ընթացքում Տիրանը, եռացող ջրով լի կաթսայի կափարիչի նման վեր-վեր էր թռչում, չէր կարողանում հանգիստ նստել:

Մերթ ընդ մերթ ուսուցչին նայելով, նա մտա-

ծում էր. «Դուք անտեղի բարկացաք, ոչ մի ուսուցիչ ինձ վրա չի բարկանում, չէ՞ որ դա կազդի իմ հեղինակության վրա, աշակերտները չեն լսի ինձ, չեն ենթարկվի...»: Ասյա նրա զայրույթով լի հայացքը շուռ էր գալիս դեպի պատից կախված վերարկուն, իսկ ետ դառնալ և Կորյունին նայել չէր համարձակվում, եթե մի բառ էլ թռցներ բերանից, դասատուն իրեն չէր ների:

Զանգը տվեց:

Հենց որ ընկեր Վարդանյանը մատյանը վերցրեց ու դուրս եկավ դասարանից, Տիրանը մոտեցավ կախիչին: Նա իջեցրեց Կորյունի վերարկուն և այս անգամ արդեն գետին շպրտեց:

Կորյունը, որ ընկերներով շրջապատված կիսատ մնացած խնդիրն էր շարունակում լուծել, մոռացել էր ամեն բան: Վերարկուի ձայնը սթափեցրեց նրանց: Կորյունը բարձրացավ նստած տեղից ու ծանրաքայլ մոտեցավ Տիրանին:

— Չասացի այդ կեռից մի կախիր, ոչ ոք այստեղից չպիտի կախի, սա իմ վերարկուի տեղն է,— գոռալով ասաց Տիրանը:

— Իմն ու քոնը ո՞րն է: Չե՞ս ամաչում, սա հո ձեր տունը չի,— հանգիստ ասաց Կորյունը:

— Քո գործը չէ, իմն է, և վե՛րջ:

Չնայած Կորյունը կանգնած էր շատ հանգիստ, բայց ամբողջ մարմնով դողում էր: Նրան թվում էր, թե ահա կհարձակվի Տիրանի վրա: Բայց նայում էր ընկերներին ու մտածում՝ ի՞նչ կասեն իրեն:

Իսկ ինչպես կռանալ ու Տիրանի ոտքերի մոտից վերցնել վերարկուն...

Տեսնելով գետին ընկած վերարկուն, Զարիկն





իսկույն մոտեցավ, վերցրեց, թափ տվեց ու խնամքով կախեց իրենց վերարկուների վրա:

Կարծես Զարիկի վերաբերմունքից ու Կորյունի լռությունից կատաղած՝ Տիրանը մի անգամ էլ նայեց վերարկուին և ասաց.

— էդ չուլը որ չկախես չի լինի, է՛լի...

Կորյունն այլևս համբերել չկարողացավ, նա փորձեց խփել Տիրանին, բայց Սամվելն ու էդվարդը նրան դուրս տարան:

— Ի՞նչ գործ ունես այդ պարծենկոտի հետ,— միջանցքով քայլելիս ասաց էդվարդը,— որ գերազանցիկ է, կարծում է, թե ամեն ինչ վերջացավ... թույլ տաս՝ հինգ ժամ ճառ կկարդա ընկերասիրության մասին: Սպասիր...

Հաջորդ դասերին Կորյունն այլևս կենտրոնանալ չէր կարողանում, նայում էր ուսուցիչներին, լսում էր նրանց, լսում էր ընկերների պատասխանները, բայց մտքից չէր հեռանում օրվա դեպքը: Նա անտարբերությամբ չէր կարողանում նայել պատից կախված վերարկուին: Նրան թվում էր, թե այնտեղից մորթու սև կոճակները տասնյակ մռայլ աչքերի նման նայում են իրեն:

Այդ պահին նա չէր երազում նման վերարկու ունենալ, դա ի՞նչ երազելու բան է որ. երկու տարի առաջ իր վերարկուն էլ այդպես նոր էր:

Է՜յ, Հովի՜կ,—հեռվից բղավեց Էդիկը,— պարապո՞ւմ ես «Չեմպիոնի» հետ...

Հովիկն ու Սիրակը սթափվեցին և շփոթված ժպիտով նայեցին մոտեցող ընկերներին։

— Չեմպիոն եմ պատրաստում,— լուրջ նայելով Էդիկին՝ ասաց Հովիկը։

Ուրիշ անգամ այդպիսի մեծամիտ պատասխանի վրա կծիծաղեին, բայց հիմա ոչ ոք չծիծաղեց։ Միայն թե ամենքն էլ պարզ նկատեցին, որ այդ օրը Հովիկը կարծես առաջվա նման փոքրիկ չէր թվում՝ Սիրակի մոտ կանգնած, կարծես թե նրանք հավասար էին՝ երկուսն էլ բարձրահասակ, երկուսն էլ ուժեղ...

Իսկ արևը էլի այնպես պայծառ էր ժպտում, ինչպես նախորդ կիրակի օրը, ամպի ոչ մի կտոր չէր ծածկում արևի դեմքը և շրջակայքում արևի շողերից փայլփլում էին ձյան անթիվ բյուրեղիկներ...



## ԼՐԱԲԵՐ ՁՅՈՒՆԸ

Մ. ԹԱՐՅԱՆ

Թողած Սևանը հեռվում,
Անցած երկար մի ճամփա,
Ահա քաղաք է մտնում
Մի ձյունածածկ մեքենա։

Նա անցնում է բեռնված,
Բեռան վրա մի թիզ ձյուն,
Հավաքվում են զարմացած՝
Մանուկները թռվռուն։

— Ա՛յ քեզ հրաշք, ա՛յ քեզ ձյուն,
Տեսեք, ավտո է նստել,
Դեռ արև է, դեռ՝ աշուն,
Որտեղի՞ց է սա եկել...

— Սևանից եմ, բալիկներ,—
Ասաց ձյունը,— ինձ լսե՛ք,
Արդեն ձմեռ պապին ձեր
Ճամփա ընկած գալիս է...

# «ԳՈՐԾԱՐԱՐ» ՄԱՐՈՆ

ԱՐ. ՍԱՀԱԿՅԱՆ



*Մարոն դույլով իր պուճուր*
*Տատի համար բերեց ջուր,*
*Ու դեռ ոտքը տան շեմքին՝*
*Գործի դրեց ամենքին.*
*— Տատի՛, անգործ մի մնա,*
*Վազ տուր խանութը գնա,*
*Բեր խաղալիք, խնձոր բեր,*
*Շոկոլադի կոնֆետներ...*
*Իսկ դու գիրքդ թող, Ավա՛գ,*
*Շտապ գրիր մի նամակ,*
*Թող հայրիկը քաղաքից*
*Մի լավ նվեր բերի ինձ...*
*Դե շո՛ւտ, ի՞նչ եք լուռ կանգնել,*
*Ծուլանում ե՞ք գործ անել:*
*Դե լավ, տեսեք էլ նորից*
*Ջուր կբերե՞մ աղբյուրից...*
*Ապա իսկույն սուս ու փուս*
*Բերած ջուրը թափեց դուրս...*

# ԴՊՐՈՑԻ ՃԱՄՓԱՆ

Լ. ԲԱՌՆԱԿՅԱՆ

Նկ. Մ. ՍՌՍՈՅԱՆԻ

Ձյան խոշոր փաթիլները դանդաղ իջնում էին ցած ու նստում մերկացած ծառերի ճյուղերին։ Գետինը ծածկվել էր ձյան բարակ շերտով։ Կարենն ու Վաչիկը մաքրում էին ճանապարհները։

Սամվելի մայրը պատշգամբում կանգնած դիտում էր տղաներին։ Ապա նա արագ շրջվեց, մտավ ներս և միացրեց ռադիոընդունիչը։

— Սամվել, վեր կաց, դասից կուշանաս,— որդուն մոտենալով շշնջաց նա։

Սենյակը լցվեց պիոներական շեփորի ձայնը։ «Սկսում ենք պիոներական լուսաբացի հաղորդումը»,—լսվեց հաղորդավարուհու ձայնը։

— Էդ ռադիոն անջատեք,— մի կողմից մյուսը շրջվելով, դժգոհ ասաց Սամվելը։

— Կարենն ու Վաչիկը վաղուց վեր են կացել, բակի ձյունն են մաքրում,—կարծես սիրտ առնելով, ձայնը բարձրացրեց մայրը։

— Էդ էր պակաս, որ վեր կենայի ձյուն քերեի, դեռ հատակն էլ կուզեիր սրբեի, նոր գնայի դպրոց։

— Ես այդ չեմ ասում, Սամվել։ Ուզում եմ վեր կենաս, լվացվես, թեյ խմես, նախաճաշիկ անես,— մեղմ ձայնով շարադրեց մայրը։

— Չես թողնում, որ մարդ հանգիստ քնի։ Սպանեցիր,-էլի. նախաճաշիկ, ճաշիկ, ամբողջ օրը նախաճաշի ու ճաշերի մասին ես խոսում, փող կտանեմ հետս, բուֆետից մի բան կվերցնեմ կուտեմ,—դժգոհ պատասխանեց Սամվելն ու նորից փակեց աչքերը։

— Մա՛մա։

— Հա, Լալիկ ջան,—աղջկա կողմը դարձավ մայրը։— Արթնացե՞լ ես, վեր կաց, արի տանեմ, շորերդ հագցնեմ։

Նա գրկեց աղջկան, տարավ բազմոցի վրա ու սկսեց հագցնել շորերը։

— Հիմա էլ գնանք լվացվելու,—ասաց Լալիկը և օրորվելով ոտքի կանգնեց։

— Սպասիր, Լալիկ, սպասիր Սամվելին էլ արթնացնեմ։

Նորից ժամացույցին նայեց ու մոտեցավ Սամվելի մահճակալին։

— Սամվել, ա՜յ Սամվել, ժամի 8-ն է արդեն, վեր կաց։

—Վահ, ինչո՞ւ չես թողնում հանգիստ քնեմ, հետո էլ ասում ես երկուսներ ես ստանում,—ծույլ-ծույլ աչքերը տրորելով խոսեց Սամվելը, ապա դժգոհ վերմակը մի կողմ շպրտեց։

— Շորերս տուր,—ասաց նա։

Մայրը շորերով բեռնված նստարանը մոտեցրեց տղային։

— Այս ինչ է, չէի՞ր կարող մի քիչ արդուկել,— շալվարը վերցնելով տրտնջաց Սամվելը։ Ապա կռացավ, մահճակալի տակից դուրս քաշեց կոշիկները։

— Տես, թե կոշիկներս ինչ օրի են, երեկոյան ընկել եմ ցեխը, իսկ դու չես մաքրել։

— Սամվել ջան, չեմ տեսել, բա որ տեսնեի այդպես կթողնեի՞։

Սամվելը սկսեց կամաց-կամաց հագնվել։

— Շուտ արա, բալա, հանկարծ կուշանաս, ու նորից հայրիկիդ կզանգահարեն...

